Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք։

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 21-22 (51-52)

ՀԽՍՀ ԺԿԽ-ի հրատարակչություն—«Խորհրդ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1938

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ



## № 21-22 (51-52)



ՀԽՍՀ ԺԿԽ-ի հրատարակչություն—«ԽՈՐՀՐԴ. ՀԱՅԱՍՏԱՆ»
ՅԵՐԵՎԱՆ — 1938



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

### 1939 ԹՎԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՄԱՐԴԱՀԱՄԱՐԸ



### ՀԱՎԵԼՎԱԾՆԵՐ



---

Պատ. խմբագիր՝ Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Պատ. խմբագրի տեղակալ՝ ՀՐ. ՄԱՐԳԱՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Հ. ԴՈԼՈՒԽԱՆՅԱՆ

Упол. Главлита А. 4098 | Заказ № 2069.
Тип. „Союзоргучет“, Ереван | Тираж 37.100 экз.



# 1939 ԹՎԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՄԱՐԴԱՀԱՄԱՐԸ

## ՄԱՐԴԱՀԱՄԱՐԻ ՀԱՄԱՌՈՏ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

ԽՍՀ Միության Ժողովրդական կոմիսարների Խորհուրդը նշանակել է Համամիութենական մարդահամար 1939 թվի հունվարի 17-ի դրությամբ։

Մարդահամարի մասին կառավարության ընդունած վորոշումը բոլոր խորհրդային և կուսակցական կազմակերպություններին, խորհրդային վիճակագրության բոլոր աշխատողներին, կուսակցական և վոչ կուսակցական բոլշևիկներին, վողջ խորհրդային ակտիվին պարտավորեցնում է մարտականորեն ձեռնամուխ լինելու այս կարևորագույն պետական գործի նախապատրաստմանը։

Սոցիալիզմը — դա հաշվառում է, բազմիցս մատնանշել է Վ. Ի. Լենինը։ Առանց ճիշտ սարքի գցված հաշվառման անհնար է սոցիալիստական պլանային տնտեսություն վարել։

Բացառիկ կարևոր նշանակություն ունի ազգաբնակչության հաշվառումը, քանի վոր Խորհրդային Միության մեջ մարդիկ հանդիսանում են «ամենից արժեքավոր և ամենից վճռող կապիտալը» (ՍՏԱԼԻՆ)։

1939 թվի մարդահամարը պետք է անցկացնել որինակելի կերպով։ Առաջիկա մարդահամարի ժամանակ չպետք է բաց թողնվի վոչ մի մարդ և յուրաքանչյուրի մասին պետք է ստացվեն մի-

անդամայն ճիշտ տեղեկություններ մարդահամարային թերթի բոլոր հարցերի վերաբերյալ։ Այդ տեղեկություններն անհրաժեշտ են կուսակցության ու կառավարության արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատանքն էլ ավելի հաջող պլանավորելու, բանվորների և գյուղացիների՝ աշխարհիս առաջին սոցիալիստական պետության պաշտպանունակության ամրապնդման աշխատանքն էլ ավելի հաջող տանելու համար։

Մարդահամարները կապիտալիստական յերկըրներում ունեն գլխավորապես հարկային և ռազմական նպատակներ, նրանք ծառայում են կատարելագործելու աշխատավորների թալանման, ըստրկացման, ազգությունների կեղեքման յեղանակները, ծառայում են թալանչիական պատերազմներ նախապատրաստելու և մղելու, կապիտալի իշխանությունն ամրապնդելու նպատակներին։ Բուրժուական վիճակագրությունը վոչ մի միջոցի առաջ կանգ չի առնում մարդահամարային մատերիալներ հավաքելիս, գործադրելով ազգաբնակչության վրա վոստիկանական ճնշում կատարելու բոլոր մեթոդները։

Բուրժուական յերկրների վիճակագրությունն ամբողջապես կեղծ է, և սարքված ի ոգուտ կապիտալիզմին։ Այսպես, որինակ՝ կապիտալիստական ստրկության պատկերը թագցնելու համար բուրժուական վիճակագրությունը այսպես կոչված «ինքնուրույն տնտեսատերերի» խմբին է դասում թե կապիտալի մագնատներին, թե արհեստավորներին և թե մանր գյուղացիներին։



Գործազրկության իսկական ծավալը թագցնելու համար բուրժուական վիճակագրությունը աշխատողների շարքն է դասում նաև նրանց, ովքեր շաբաթական մեկ-յերկու որ աշխատանք ունեն։

Աշխատանք փնտրող յերիտասարդությունը, վորն իր ինքնուրույն գոյության առաջին իսկ որերից դատապարտված է աշխատանքի բորսաների շեմքերը մաշելու, վիճակագրության ժամանակ գործազուրկների շարքը չի դասվում այն հիման վրա, վոր նա առաջ յերբեք չի աշխատել։

Զբաղմունքի փոխարեն հաճախ գրի յե առնըվում պրոֆեսիան, վորն ինարկե, գոյության միջոցներ չի տալիս, յեթե մարդը չի աշխատում։

Մարդահամարի նյութերի այսպիսի խաբեբայական «մշակումից» հետո, ինչպես մատնանշել է ԼԵՆԻՆԸ «...Կապիտալիզմի մեջ յեղած դասակարգային հակասությունների բացման արմատապես վոչ ճիշտ, գործի իրական դրությունը կատարելապես խեղաթյուրող,—բայց բուրժուազիային շատ դուր յեկող պատկեր է ստացվում[1]»)։

Ազգաբնակչությունը, հիանալի գիտենալով բուրժուական մարդահամարների վոստիկանական հարկային և ռազմա-քաղաքական նպատակների մասին, ամեն կերպ ձգտում է խուսափել ցուցակագրիչներին ճիշտ պատասխաններ տալուց։ Գերմանիայում 1933 թվի մարդահամարի ժամանակ առաջարկվում եր «առանձնապես դժվարին տեղամասերում» դիմելու վոստիկանների ոգնությանը։

[1] ԼԵՆԻՆ հ. 17. եջ 619, ռուսերեն 3-րդ հրատ.

Կապիտալիստական յերկրներում, մարդահամարներն այդ կերպ կազմակերպելիս ի զուր կըլիներ այնտեղ փնտրել իրականության ճիշտ արտացոլումը: Այնքան ժամանակ, վորքան գոյություն ունի կապիտալիզմը, խոսք անգամ լինել չի կարող օբյեկտիվ վիճակագրական գիտության մասին, մարդահամարների նյութերի լիակատար ճշտության մասին:

* * *

Ցարական Ռուսաստանում առաջին և միակ ընդհանուր մարդահամարն անց է կացվել 1897 թվի հունվարի 28-ի դրությամբ: Մինչև այդ, ցարական իշխանություններն oգտվում եյին ազգաբնակչության թվի վերաբերյալ խիստ կասկածելի վոստիկանական տեղեկություններից և առանձին քաղաքներում անցկացված մասնակի մարդահամարի նյութերից:

Ցարական Ռուսաստանում իշխող աղքատությունն ու անկուլտուրականությունը հեշտությամբ կարող եյին բացվել ընդհանուր մարդահամարի հետևանքով, և դա գլխավոր պատճառն եր հանդիսանում այն բանի, թե ինչու մարդահամարը տասնյակ տարիներով ուշացվում եր և չեր անցկացվում: Աշխատավոր ազգաբնակչության դրությունն անհավատալի ծանր եր: Ռուսական մեծ գրող Լև Նիկոլաևիչ Տոլստոյը, վորը Մոսկվայի 1882 թվի մարդահամարի մասնակիցն եր յեղել, իր «Մոսկվայի մարդահամարի մասին» վերնագրով հոդվածում գրում եր «... Մենք չերևի կիմանանք, վոր մեր մեջ ... ապրում են տասնյակ



հազարավոր առանց հացի, հագուստի և անապաստան մարդիկ»:

«Մարդահամարը մեր՝ բարեկեցիկ և այսպես կոչված լուսավորված մարդկանց աչքերի առջև կհանի այն ամբողջ աղքատությունը և ճնշվածությունը, վորոնք թաքնված են Մոսկվայի բոլոր անկյուններում»:

Էլ ինչ մնաց ասելու ընկճված, խավար, անգրագետ գյուղի մասին, վորը հեծում եր հողի հետագնման վճարների, կալվածատերերի և կուլակների ստրկացման բեռան տակ:

1897 թվի մարդահամարը միանգամայն չեր նախապատրաստված և ծայր աստիճանի անբավարար անցկացվեց: Այդ գործը հանձնարարված եր ներքին գործոց վոստիկանական մինիստրության բթագլուխ ու անշնորհք չինովնիկներին, վորոնք վոչ մի հասկացողություն չունեյին վիճակագրական հաշվառումների կանոնների մասին և առաջին իսկ քայլերից գործը խճճեցին:

Մարդահամարի նպատակները բացահայտորեն «կազյոննի» եյին—հարկային և ռազմական: Զարմանալի չէ, վոր այդ մտադրությունը ժողովուրդը դիմավորեց անվստահությամբ և թշնամաբար:

Ժամանակակիցների վկայությամբ, ժողովրդի մեջ «սկսեցին լսվել առաջիկա մարդահամարի բացատրությունները, նրան վերագրելով մոտիկ պատերազմի համար զինվորության պետքական մարդկանց թիվը վորոշելու նպատակը»:

Գիտենալով ցարական իշխանությունների ջարդարարական մեթոդները, ազգային փոքրա-

մասնությունները սարսռում էին սպասում ցուցակագրողներին։ Աղանդավորական ընտանիքները փախչում էին մարդահամարից, թաքցնում էին իրենց դավանանքը, վախենալով, վոր դատաստան կտեսնեն նրանց հետ։ Նույնիսկ մի դեպք յեղավ, յերբ Տիրասպոլի գավառում 25 հոգուց բաղկացած մի խումբ գյուղացիներ «սուրբ» քարոզչուհու ազդեցության ներքո, թույլ տվին, վոր իրենց վողջ-վողջ թաղեն հողի մեջ։

Մարդահամարի նյութերի մշակումն ութ ու կես տարի քաշեց, և այնուամենայնիվ չավարտվեց։ Մարդահամարի թերթերի բազմաթիվ հարցեր անմշակ մնացին։

Ազգաբնակչության դասակարգային կազմը, բուրժուական վիճակագրության սովորական պրիոմների հետևանքով ցույց է տրված սխալ և խեղաթյուրված։ Մարդահամարի տվյալներով անհնար էր սահմանել՝ հողագործ-տնտեսատերն անձամբ, թե՞ վարձու ուժի միջոցով էր մշակում հողը, կուլա՞կ էր, միջակ, թե՞ չքավոր։ Նրանք բոլորը գրի էին առնվում վորպես «հողագործ-տնտեսատերեր»։

Վլադիմիր Իլյիչ ԼԵՆԻՆԸ, վորն օգտվեց մարդահամարի նյութերից իր «Կապիտալիզմի զարգացումն Ռուսաստանում» աշխատության համար, ստիպված յեղավ ինքը վերամշակել մարդահամարի տվյալները։ Ահա թե 1897 թվի մարդահամարի նյութերի հիման վրա ինչ պարզեց Վլադիմիր Իլյիչը։

Խոշոր բուրժուազիան, կալվածատերերը, բարձր աստիճանավորները և այլք Ռուսաստանում յե-



րեք միլիոն էին, ունևոր տնտեսատերերը, 23,1 միլիոն, ամենաչքավոր մանր տնտեսատերերը 35,8 միլ., պրոլետարները և կիսապրոլետարները՝ 63,7 միլիոն։

Վերջին խմբում գտնվում էին առնվազն 22 միլիոն պրոլետարներ, իսկ ազգաբնակչությունն ընդամենը 125,6 միլիոն էր։

Նյութերի մշակման սխալ և վոչ հմուտ յեղանակների հետևանքով ցարական վիճակագիրները ստացան այնպիսի անհեթեթ տվյալներ, ըստ վորոնց կիրգիզները կաթոլիկական դավանանքին պատկանողներ դուրս յեկան։ Մոսկվայի նահանգում հանկարծ «յերևան յեկան» քոչվոր կալմիկներ. ամուսնացածների թվում կային յերկու տարեկան յերեխաներ, ուսուցիչների մեջ՝ անգրագետներ, մանուկների խմբի մեջ ընկան վարչական և դատական գերատեսչության աստիճանավորներ և այլն։

Համեմատության համար հետաքրքիր է բերել 1897 թվի մարդահամարի մի քանի տվյալներ։ Ցարական Ռուսաստանում ուսուցիչները 79 հազար հոգի էին, իսկ այժմ ԽՍՀՄ-ում նրանք կազմում են մոտ 950 հազար հոգի։ Բժիշկները մոտ 17 հազար էին, ներկայումս՝ ավելի քան 100 հազար։ Ինժեներները 4 հազար էին, այժմ մեզ մոտ կա մոտ 600 հազար ինժեներ-տեխնիկական աշխատողներ։

Տերտերները, վանականները և կրոնական պաշտամունքի այլ սպասավորները 295 հազար հոգի էին—գրեթե չորս անգամ ավելի, քան ուսու-

ցիչները։ Հեքիմները գրեթե այնքան էին, որքան բժիշկները (13 հազարից ավելի)։

Մոսկվայում մեկ միլիոնից քիչ ավելի բնակիչ կար, այնինչ այժմ այնտեղ ապրում են մոտ 4 միլիոն հոգի։

Այն ժամանակ Մոսկվայում ուսուցիչները 1897 հոգի էին, ներկայումս՝ 30 հազարից ավելի։ Բժիշկները 1380 հոգի էին, այժմ՝ 15 հազարից ավելի, ինժեներները 374 հոգի էին, իսկ այժմ՝ 60 հազարից ավելի։

1897 թվին Մոսկվայում կային 7638 տերտերներ, վանականներ և նման մարդիկ, որոնցից դեռևս 1926 թ. մնացել էին միայն 943 հոգի։

Որպես ինքնուրույն «տնտեսատեր» Մոսկվայում հաշվի էին առնված 301 հասարակաց տուն պահողներ (գրեթե նույնքան, որքան ինժեներները)։ Այդ խայտառակ հաստատությունների հետքն էլ չի մնացել այսօր։

Չնայած առաջին մարդահամարի կազմակերպման ազատական թերություններին, նա իր դրական ազդեցությունն ունեցավ, յերևան հանելով բուրժուա-կալվածատիրական Ռուսաստանի հակասությունները, ազգաբնակչության անհավատալի աղքատությունն ու անկուլտուրականությունը, բանվոր դասակարգի աճումը։

* * *

Խորհրդային իշխանությունն իր գոյության առաջին իսկ օրերից ձեռնամուխ յեղավ ազգաբնակչության և յերկրի տնտեսության հաշվառման կազմակերպմանը։



Առաջին խորհրդային մարդահամարը Վ. Ի. ԼԵՆԻՆԻ առաջարկությամբ անցկացվեց 1920 թվի օգոստոսի 28-ին։ Նրա հետ միասին անցկացվեցին արդյունաբերության, գյուղատնտեսության և ժողովրդական կրթության հիմնարկների ցուցակագրումներ։ Այդ մարդահամարն ընդգրկեց Խորհրդային Միության ներկա տերիտորիայի 72% միայն. յերկրի մնացած մասում—Բելոռուսիայում, Ուկրաինայում, Ղրիմում, Անդրկովկասում, մասամբ Թուրքեստանում և Կիրգիզիայում, Հեռավոր Արևելքում, քաղաքացիական պատերազմ էր գնում։ Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ամենայն ղեկավարություն ցույց տվեց մարդահամարին և օգնեց այն հաջողությամբ վերջացնելու։

Ըստ 1920 թվի մարդահամարի, նախկին Մոսկվայի նահանգում, որն իր տերիտորիայով հավասար էր մոտավորապես ներկա Մոսկվայի մարզին, հաշվվել էր ընդամենը մոտ 1,6 միլիոն բնակիչ, այսինքն մոտավորապես 2 և կես անգամով ավելի պակաս, քան ներկայումս։ Պատերազմը և ավերածությունը ազգաբնակչության մասսային հեռացրել էին նահանգի արդյունաբերական քաղաքներից։

Պատերազմն իր դրոշմն էր դրել ազգաբնակչության կազմի վրա նաև ըստ սեռի, տղամարդիկ կազմում էին 42%, կանայք 58%։

Մոսկվայի նահանգում ազգաբնակչության թվով ամենից ավելի խոշոր քաղաքներն էին՝ Օրեխովո-Զույեվոն, ուր կային 31,7 հազար հոգի, Սերպուխովը՝ 28,2 հազար, Կոլոմնան՝ 20,9 հազար, Բոգորոդսկի (այժմս Նոգինսկ) 15,7

հազար, Սերգիյեվսկի Պոսադը (ներկայումս Զագորսկ)՝ 13,4 հազար և Պոդոլսկ՝ 12,2 հազար հոգի:

Այս քաղաքներից յուրաքանչյուրի ազգաբնակչության թիվը ներկայումս ավելացել է 3—5 անգամով:

1920 թվի մարդահամարը հարուստ նյութ տվեց մեր յերկրի՝ իմպերիալիստական և քաղաքացիական պատերազմների հետևանքով ավերված ժողովրդական տնտեսության վերականգնման աշխատանքը պլանավորելու համար:

1923 թվին, մարտի 15-ի դրությամբ կատարվեց յերկրի քաղաքային մարդահամարը: Մոսկվայի ազգաբնակչությունն այդ ժամանակ 1920 թվի համեմատությամբ ավելացել եր 50%-ով և կազմում եր մեկ ու կես միլիոնից ավելի: Մոսկվայի նահանգի քաղաքներում ազգաբնակչությունն այդ ժամանակ ավելացել եր 32-%ով:

1926 թվի վերջում անցկացվեց Համամիութենական նոր մարդահամար 1926 թվի դեկտեմբերի 17-ի դրությամբ: Մարդահամարի արդյունքները քաղաքական և տնտեսական վիթխարի նշանակություն ունեցան տնտեսական և կուլտուրական շինարարության համար, ստալինյան առաջին հնգամյակի պլանը կազմելու համար:

* * *

Վերջին 10 տարում արմատապես փոխվեց խորհրդային ժողովրդի շերտավորման բնույթը, նրա սոցիալական և պրոֆեսիոնալ կազմը, նրա կուլ-



տուրայի մակարդակը: 1926 թվի մարդահամարի տվյալները հասկանալի յե, հնացան: Հարկավոր եր նոր մարդահամար: Այդ նշանակվեց 1937 թվի հունվարի 6-ին: Խորհրդային ժողովուրդը շատ գիտակցաբար վերաբերվեց այդ կարևորագույն պետական միջոցառմանը: Սակայն այդ գործը վիժեցրին ժողովրդի անարգ թշնամիները — ֆաշիզմի տրոցկիստական-բուխարինական գործակալները, վորոնք այն ժամանակ խցկվել եյին Ժողովրդական Տնտեսության Հաշվառման Կենտրոնական Վարչության ղեկավարության մեջ:

Մարդահամարն անցկացնելիս ժողովրդի թշնամիները խախտեցին կառավարական հրահանգները և վիճակագրական գիտության տարրական հիմունքները: Կառավարությունը մարդահամարի կազմակերպումը ճանաչեց անբավարար և նրա նյութերը՝ դեֆեկտավոր (խոտան):

Խորհրդային պանծալի հետախուզությունը, ստալինյան ժողկոմ Ն. Ի. Յեժովի գլխավորությամբ, ջախջախեց դավաճանների ոձաբունը խորհրդային վիճակագրության ապարատում: 1939 թվի մարդահամարն անցկացնելիս հարկավոր է առավելագույն զգոնություն ցուցաբերել, վերացնել թշնամական վոտնձգության և այդ կարևորագույն միջոցառմանը խանգարելու փորձերի ամեն մի հնարավորություն:

## 1939 ԹՎԻ ՄԱՐԴԱՀԱՄԱՐԻ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

1939 թվի մարդահամարի նշանակությունը բացառիկ մեծ է: Պետական, քաղաքական ղեկա-

վարությունը, ժողովրդատնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրները անխախտաբար պահանջում են ճշտիվ գիտենալ ազգաբնակչության թիվը և ամենամանրամասն տեղեկություններ ունենալ նրա կազմի մասին։ 1926 թվի մարդահամարի ժամանակից ի վեր մեր երկրում հսկայական փոփոխություններ են տեղի ունեցել։

1926 թվին ԽՍՀՄ-ի ժողովրդական տնտեսության մեջ դեռևս կային կապիտալիզմի տարրեր՝ երկրում հաշվվում էր վարձու բանվորներ ունեցող 845 հազար «տնտեսատեր», մանր ու միջակ կապիտալիստներ քաղաքներում և կուլակներ գյուղում։

Գյուղատնտեսությունը 1926 թվին իրենից ներկայացնում էր անհատական մանր բաժան-բաժան գյուղացիական տնտեսությունների մի ծով՝ թույլ տեխնիկայով և կուլակի բռնացումով։

Ստալինյան երկու հնգամյակների հետևանքով Խորհրդային Միության արդյունաբերությունն իր ընդհանուր արտադրանքով առաջին տեղը բռնեց Եվրոպայում և երկրորդ տեղն՝ աշխարհում։ «Իսկ ամենից գլխավորն այն է, որ կապիտալիզմն իսպառ վտարված է մեր արդյունաբերության սֆերայից, իսկ արտադրության սոցիալիստական ձևն այժմ անբաժանելիորեն տիրապետող սիստեմ է հանդիսանում մեր արդյունաբերության բնագավառում»[1]։

Մեզ մոտ կառուցված է աշխարհիս ամենախոշոր

[1] Ի. Վ. ՍՏԱԼԻՆ, Զեկուցում ԽՍՀ Միության Սահմանադրության նախագծի մասին, ռուսերեն, էջ 10, Կուսհրատ, 1936 թ.



սոցիալիստական գյուղատնտեսությունը, առաջավոր տեխնիկայով՝ կոլխոզներում և սովխոզներում։ Մենատնտեսները մնացել են մոտ 7% գյուղացիական տնտեսությունների ընդհանուր թվի համեմատությամբ։ Մենատնտեսների ցանքատարածության տեսակարար կշիռը միանգամայն չնչին է և կազմում է ընդամենը 1% ընդհանուր ցանքատարածության համեմատությամբ։

1926 թվին երկրում հաշվվում էին մեկ միլիոն 14 հազար գործազուրկներ։ Միայն Մոսկվայում նրանք 130 հազար հոգի էին։ Սկսած 1931 թվից երկրում չկա գործազրկություն, կապիտալիզմի այդ ծանր ժառանգությունը։ 1936 թվին բանվորների և ծառայողների թիվը հասավ 25, 8 միլիոնի, 14,4 միլիոնով ավելի, քան 1913 թվին։ ԽՍՀՄ-ում սահմանված է աշխարհիս ամենակարճ աշխատանքային օրը։

Մեզ մոտ այժմ չկան շահագործող դասակարգեր։ Նրանք լիկվիդացիայի յեն յենթարկված։

ԽՍՀՄ-ում հիմնականում կառուցված է սոցիալիզմը—կոմունիստական հասարակության այդ առաջին փուլը։ Այն, ինչի մասին երազում էին մարդկության լավագույն մտքերը, երկրագնդի մեկ վեցերորդ մասում ձեռք են բերել Խորհրդային Միության ժողովուրդները, Լենինի-Ստալինի կուսակցության ղեկավարությամբ։

Մեր երկիրը հզոր պետություն է դարձել ռազմական տեսակետից։ «Խորհրդային Միությունը թույլ և պաշտպանության համար անպատրաստ երկրից վերածվեց հզոր երկրի՝ պաշտպանունակության իմաստով, մի երկրի, որը պատրաստ

և ամեն տեսակ պատահականությունների հանդեպ, մի յերկրի, վորն ընդունակ է մասսայական մասշտաբով արտադրելու պաշտպանության բոլոր արդիական գործիքները և մատակարարելու դրանք իր բանակին՝ դրսից կատարվող հարձակման դեպքում»[1]:

Ստալինյան յերկու հնգամյակների տարիներում տեղի ունեցավ մեր հայրենիքի աշխատավոր ազգաբնակչության նյութական և կուլտուրական մակարդակի չտեսնված վերելք: Յերկրորդ հնգամյակի չորս տարում կառուցված է 16725 դպրոց: Բարձրագույն ուսումնական հիմնարկների թիվը, վոր 1914 թ. կազմում էր 91, 1936 թվին հասավ 700-ի: Խորհրդային Միության քաղաքներում խորհրդային իշխանության ժամանակամիջոցում կազմակերպված է 17 հազար ակումբ, իսկ գյուղերում՝ 63,7 հազար խրճիթ-ընթերցարան, կուլտուրայի տուն, ակումբ և այլն: 1936 թվին յերկրում կար 55,9 հազար գրադարան գրեթե 5 անգամով ավելի, քան 1914 թվին: 1936 թվին գործում էյին գրեթե 30 հազար կինո սարքավորում և 700 մշտական թատրոն: Թերթերի միանվագ տիրաժը, վորը 1913 թվին կազմում էր 2,7 միլիոն օրինակ, 1936 թ. ավելացավ գրեթե 14 անգամով և հասավ 38 միլիոնի: Տարեց-տարի ավելանում է հիվանդանոցների, ամբուլատորիաների, ծննդատների, մանկամսուրների և կոնսուլտացիաների թիվը:

[1] Ի. ՍՏԱԼԻՆ. Առաջին հնգամյակի արդյունքները «Լենինիզմի հարցերը» էջ 720, 9-րդ հրատ., հայերեն:



Աշխատավոր ազգաբնակչության բարեկեցության աճումն իր արտահայտությունն է գտնում ծննդաբերության ուժեղ ավելացման և մահացության կրճատման մեջ: Ընկեր Ստալինն առաջավոր կոմբայնավարների և կոմբայնավարուհիների խորհրդակցությունում արտասանած ճառում ասում էր «...Այժմ մեզնում յուրաքանչյուր տարի ազգաբնակչության զուտ աճ է ստացվում մոտ յերեք միլիոն հոգի: Այս նշանակում է, վոր յուրաքանչյուր տարի մենք ստանում ենք մի ամբողջ Ֆինլանդիայի չափով աճ»:

Մեր յերկրում տեղի ունեցած այս բոլոր համաշխարհային, պատմական փոփոխությունները, վորոնք արդյունք են Լենին-Ստալինի կուսակցության իմաստուն քաղաքականության, պետք է լիակատար արտացոլում գտնեն բանվորների և գյուղացիների՝ աշխարհիս առաջին սոցիալիստական պետության Համամիութենական մարդահամարի արդյունքների մեջ:

1939 թվի մարդահամարի գիտական ծրագիրը կազմված է խորհրդային կառավարության ղեկավարի Վ. Մ. Մոլոտովի անձնական մասնակցությամբ և ղեկավարությամբ: Մարդահամարի գիտական տվյալների հիման վրա կազմվելու յե ստալինյան յերրորդ հնգամյակը:

Մարդահամարի տվյալների համաձայն կազմվելու յեն ազգաբնակչության մատակարարման, առևտրական ցանցի ծավալման, փոխադրումների կազմակերպման պլանային հաշվարկները: Մարդահամարի նյութերը կարևոր ոժանդակություն կհանդիսանան հանրապետությունների մարզերի

և շրջանների վարչական շրջանացում կատարելիս, աշխատավորների դեպուտատների խորհուրդների ընտրական սկրուգները սահմանելու համար:

Մարդահամարի նյութերը կծառայեն ազգաբնակչությանը դպրոցներով, կուլտուրական և բժշկական հիմնարկներով սպասարկելու գործի կազմակերպման համար, կոմունալ և բնակարանային շինարարության զարգացման համար:

Ազգաբնակչության պրոֆեսիոնալ կազմի և աշխատավորներին ըստ ժողովրդական տնտեսության ճյուղերի բաշխելու վերաբերյալ տվյալները հարկավոր են սոցիալիստական արդյունաբերության ու գյուղատնտեսության յերկրի աշխատանքային ռեսուրսների հաշվառման և լավագույն օգտագործման համար, արդյունաբերական արտադրության և գյուղատնտեսության հետագա ընդարձակման ու բարելավման համար, Խորհրդային Միության պաշտպանունակության ամրապնդման համար: Մարդահամարի պետական նշանակությունն իրոք վիթխարի յե: Մեծ ե նաև նրա միջազգային նշանակությունը:

Մ․րդահամարի արդյունքները կլինեն աշխատավորների կյանքի և կենցաղի մեջ մտած սոցիալիզմի կառուցման արդյունքների անդրադարձումը: Ամբողջ աշխարհի աշխատավորները արժանահավատ թվերի մեջ կտեսնեն ԽՍՀՄ-ի հզորության ծաղկումը:

Մարդահամարի տվյալները բոլորից լավ կխոսեն սոցիալիզմի օգտին, ընդեմ կապիտալիզմի:



# ԻՆՉՊԵՍ Ե ԱՆՑԿԱՑՎԵԼՈՒ ՄԱՐԴԱՀԱՄԱՐԸ

Մարդահամարն անց ե կացվելու քաղաքային բնակավայրերում 7 օր—հունվարի 17-ից մինչև 23-ը ներառյալ, իսկ գյուղական վայրերում՝ 10 օր, մինչև հունվարի 26-ը ներառյալ: Մարդահամարը կսկսվի միաժամանակ ամբողջ Խորհրդային Միության մեջ 1939 թվի հունվարի 17-ի առավոտյան ժամը 8-ից:

Մարդահամարի բազմօրյա անցկացումը նրա համար ե սահմանված, վոր հաշվարարները հնարավորություն ունենան պլանաչափ կերպով և ուշադրությամբ կատարել իրենց տեղամասի բոլոր շենքերի համատարած շրջագայությունը, անձամբ հանդիպել բոլոր ցուցակագրվողներին, հարցեր տալ նրանց և սպառիչ պատասխաններ ստանալ մարդահամարային թերթի բոլոր 16 հարցերին: Բացի դրանից, մարդահամարի բազմօրյա լինելը հնարավորություն ե տալիս ավելացնել ցուցակագրվող ազգաբնակչության մեկ հաշվարարին ընկնող նորման և կրճատել նրանց թիվը: Այսպես՝ 1937 թվին հաշվարարները մեկ միլիոնից ավելի եյին, իսկ 1939 թվին մարդահամարի ժամանակ նրանք կլինեն մոտ 400 հազար, այսինքն գրեթե յերեք անգամով պակաս: Պակաս թվով հաշվարարներ ավելի հեշտ ե ջոկել, նրանց կարելի յե ավելի լավ հրահանգավորել:

Հիվանդանոցներում, ծննդատներում, սանատորիաներում, հանգստյան տներում, մանկատներում, հաշմանդամների տներում մարդահամարն անց ե կացվելու մեկ օրվա ընթացքում—հունվարի

17-ին—հիմնարկի անձնակազմի միջոցով, ժողովրդա-տնտեսական հաշվառման վարչության օրգանների ցուցմունքով և ղեկավարությամբ։ Հյուրանոցներում, գյուղացու տներում, իջևաններում մարդահամարը նույնպես անց ե կացվելու մեկ օրում հատկապես առանձնացված հաշվարարների միջոցով։ Ինչպես հիվանդանոցային, այնպես էլ հյուրանոցային շենքերում յուրաքանչյուր հաշվարարին տրվելու յե 40—50 բնակիչ։

Վագոններում, կայարաններում և ճանապարհորդող ազգաբնակչության կուտակման այլ վայրերում մարդահամարն անց ե կացվելու հունվարի 16-ի լույս 17-ի գիշերը։ Խորհրդային Միության տերիտորիայով շարժվող գնացքները չեն մտցվում վորևե վորոշակի շրջանի մարդահամարային շրջանացման մեջ։ Այնուամենայնիվ, հունվարի 16-ի լույս 17-ի գիշերը գնացքը վորևե հանրապետության, յերկրի կամ մարզի տերիտորիայով անցնելիս նրա մեջ անպայման գտնըվելու յեն հաշվարարները, վորոնք մարդահամարը կկատարեն գնացքի շարժման ընթացքում։

Առաջիկա մարդահամարի ժամանակ ի տարբերումն 1937 թվի մարդահամարից, վաղորոք մարդահամարի թերթերը չեն լրացվելու։ Դրա փոխարեն հաշվարարները հունվարի 12-ից մինչև 16-ը կշրջեն իրենց տեղամասերը և ազգաբնակչությանը կնախազգուշացնեն առաջիկա մարդահամարի մասին։ Այնուհետև մարդահամարը վերջանալուց հետո (քաղաքային վայրերում՝ հունվարի 24-ից մինչև փետրվարի 2-ը, իսկ գյուղական վայրերում՝ հունվար 27-ից մինչև փետրվարի



5-ը) տեղի յե ունենալու բոլոր շենքերի համատարած կոնտրոլ շրջագայություն ազգաբնակչության հաշվման ճշտությունը պարզելու համար։ Կոնտրոլ շրջագայություն կատարելու յե հրահանգիչ-հսկիչը հաշվարարի, իսկ գյուղական վայրերում՝ նաև գյուղխորհրդի լիազորի հետ միասին։ Միայն այս բանից հետո, յերբ կոնտրոլ շրջագայությունը կվերջանա, մարդահամարը կարելի յե ավարտված համարել։

Առաջիկա մարդահամարի տարբերիչ առանձնահատկությունն ե հանդիսանում նաև այն, վոր այն բոլոր քաղաքացիներին, վորոնք կցուցակագրվեն վորպես ժամանակավոր ապրողներ, տեղեկանքներ կտրվեն այն մասին, վոր նրանք անց են կացել մարդահամարը և վորպեսզի նրանց վորևե այլ վայրում յերկրորդ անգամ չցուցակագրեն իբրև առկա բնակչություն։ Այդ տեղեկանքներն անհրաժեշտ ե պահել մինչև 1939 թ. փետրվարի 15-ը։ Մտցվում են նաև կոնտրոլ բլանկներ, վորոնք լրացվում են այն դեպքերում, յերբ անհրաժեշտ ե ստուգել, թե ցուցակագրված ե այս կամ այն մարդը և այսպիսով ծառայում են առկա ազգաբնակչության լիակատար հաշվառման նպատակներին։

*
* *

Ժողտնտհաշվարչության օրգանների հիմնական աշխատողներից շրջանային (քաղաքային) և յենթաշրջանային տեսուչներից բացի, մարդահամարին մասնակցելու յեն դպրոցների, խորհրդային հիմնարկների և առևտրական կազմակերպու-

թյունների աշխատողները, բարձրագույն ուսումնական հիմնարկների և միջնակարգ դպրոցների բարձր դասարանների սովորողները, ձեռնարկությունների, սովխոզների, կոլխոզների հաշվետու—հաշվային և դրամանյութական անձնակազմը և այլն։ Բոլոր այն անձինք, վորոնք ներգրավվում են մարդահամարի աշխատանքին, իրենց աշխատավայրի պահպանվող աշխատավարձից բացի, լրացուցիչ կերպով վարձատրվելու յեն, ընդ վորում նրանց վարձատրության չափը զգալիորեն ավելի բարձր է լինելու, քան 1937 թ. մարդահամարի ժամանակ։

Միայն ստուգված, բարեխիղճ մարդիկ, անցյալ մարդահամարի լավագույն աշխատողները, միութենական և ինքնավար հանրապետությունների Գերագույն Խորհուրդների ընտրական կամպանիաների ակտիվ մասնակիցները, մեր սքանչելի հայրենիքի պատրիոտները կարող են թույլատրվել այս պատասխանատու աշխատանքին։

Բոլոր հաշվարարները և հրահանգիչ-հսկիչները ունենալու յեն հատուկ վկայականներ շրջանային գործադիր կոմիտեյի կամ քաղաքային խորհրդի նախագահի ու ժողտնտհաշվարչության շրջանային տեսուչի ստորագրություններով և պարտավոր են այդ վկայականները ներկայացնել ազգաբնակչության պահանջով, յերբ նրանք շրջագայեն շենքերը և հարցեր տան մարդկանց։

Խորհրդային հետախուզության կողմից ջախջախված ֆաշիզմի տրոցկիստական-բուխարինական գործակալների մնացորդները կարող են փորձ անել վնասել և սպականել մարդահամարն անց-



կացնելիս, տարածելով մարդահամարի խնդիրներն ու նրա անցկացման կարգը խեղաթյուրող անհեթեթ լուրեր։ Մարդահամարին դիմադրելու ամեն մի փորձ պետք է կանխել, թշնամական պոչունքը պետք է վճռական հակահարված ստանա։ Խորհրդային ազնիվ մարդիկ չեն կարող անտարբեր վերաբերմունք ունենալ մարդահամարի կանոնների խախտման հանդեպ։

ԽՍՀ Միության ժողովրդական կոմիսարների Խորհրդի կողմից սահմանված է, վոր մարդահամարի այն աշխատողները, վորոնք մեղավոր կլինեն մարդահամարի անցկացման կարգը խախտելու մեջ, ինչպես նաև հրապարակում են առանձին անձանց վերաբերյալ այն տեղեկությունները, վոր հավաքել են մարդահամարի ժամանակ, կանչվում են դատական պատասխանատվության։

Նմանապես դատական պատասխանատվության են յենթակա այն անձինք, վորոնք խուսափում են տեղեկություններ տալուց, կամ գիտավորյալ անճիշտ տեղեկություններ են տալիս։

*
* *

Վորպեսզի մարդահամարն ավելի հաջող անցկացվի, անհրաժեշտ է լայն մասսայական, բացատրական աշխատանք ծավալել ազգաբնակչության մեջ նրա նշանակության, խնդիրների և անցկացման կարգի մասին։

Հարկավոր է լայնորեն օգտագործել ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի և միութենական ու ինքնավար հանրապետությունների Գերագույն Խոր-

հուրդների ընտրությունների վերաբերյալ, ընտրական կամպանիաների ժամանակ տարված մասսայական-քաղաքական աշխատանքի փորձը։ Բոլոր կուսակցական կազմակերպությունների, կուսակցական և վոչ կուսակցական բոլշևիկների ուղղակի պարտականությունն է՝ անդուլ կերպով բացատրել մարդահամարի նշանակությունը։

Շրջանային կուսակցական և խորհրդային կազմակերպությունները պետք է մասսայական-քաղաքական մեծ աշխատանք ծավալեն։ Հարկավոր է 1939 թվի մարդահամարի մասին կառավարության ընդունած վորոշումը և այդ թեմայի շուրջը կենտրոնական թերթերի տպագրած առաջնորդող հոդվածները ռադիոյով հաղորդել և նրանց բարձրաձայն ընթերցանություններ կազմակերպել։ Անհրաժեշտ է քննարկել մարդահամարի անցկացման հարցը կուսակցության և կոմյերիտմիության շրջկոմների, ավանային և գյուղական խորհուրդների պլենումներում, գործարկոմների պլենումներում ակտիվի հետ միասին, կուսակցական և կոմյերիտական կազմակերպությունների ընդհանուր ժողովներում, բանվորների և ծառայողների ընդհանուր ժողովներում, ձեռնարկություններում ու հիմնարկություններում և կոլտնտեսականների ընդհանուր ժողովներում՝ կոլտնտեսություններում։

Միութենական հանրապետությունների Գերագույն Խորհուրդների ընտրության նախկին ընտրական տեղամասերի տերիտորիայում, ուր մինչև այժմ աշխատում են ամրացված ագիտատորները, պրոպագանդիստները և զրուցավարները, անհրաժեշտ է բնակչության հետ զրույցներ անց-



կացնել և մարդահամարի շուրջը ռադիո-դասախոսությունների ունկնդրում կազմակերպել։

Բանվորական և կոլտնտեսական ակումբներում, պարկերում այժմվանից իսկ պետք է կախել մարդահամարի թերթերի մեծացրած նմուշներ, վորոնցով ազգաբնակչությունը ծանոթանալու յե մարդահամարի ժամանակ դրվելիք հարցերի բովանդակությանը։ Հարկավոր է մարդահամարի հատուկ անկյուններ սարքավորել ակումբներում, խրճիթ-ընթերցարաններում, կարմիր անկյուններում։

Ակտիվին ներգրավելու կարևորագույն ձևերից մեկն է հանդիսանում քաղաքային, ավանային և գյուղական խորհուրդներին թաղային կոմիսիաների կից, խոշոր տնտեսություններում մարդահամարի օժանդակող հանձնաժողովներ կազմակերպելը։

Մարդահամարային բաժինների վարիչների ղեկավարության ներքո օժանդակող հանձնաժողովները պետք է ոգնեն բնակավայրերի ցուցակների ստուգումն անցկացնելուն, վորպեսզի վոչ մի անտառային պահակատուն, բուդկա, խուտոր, մեկուսի գտնվող շինություն բաց չթողնվեն, վորպեսզի ամենուրեք լինի հաշվարարը։ Քաղաքային բնակավայրերում նույնպիսի խնամքով պետք է ստուգվեն տնատիրությունների ցուցակները։

Հարկ կլինի, վոր օժանդակող հանձնաժողովները զբաղվեն գյուղխորհրդի տնտեսական մատյանների վարման ստուգումով, վորպեսզի ազգաբնակչության կազմում յեղած զգալի փոփոխությունների բոլոր դեպքերը ժամանակին հայտնի լինեն մարդահամարի աշխատողներին և վորպեսզի նրանք իրենց հերթին կարողանան լրացուցիչ կերպով

հաշվարարներ ուղարկել այն տեղերը, ուր խիստ ավելացել է ազգաբնակչության թիվը (օրինակ՝ սեզոնային բանվորների գալու դեպքում, նոր մեծ բնակելի տների բնակեցման դեպքում և այլն)։

Ոժանդակող հանձնաժողովները պետք է ոգնեն մարդահամարային բաժինների վարիչներին հաշվարարների և հրահանգիչ-հսկիչների կադրեր ընտրելու, ինչպես նաև նրանց ուսուցումը կազմակերպելու գործում։

Ոժանդակող հանձնաժողովները հասարակական կոնտրոլ կհանդիսանան մարդահամարի նախապատրաստական աշխատանքների ընթացքի նկատմամբ։ Մարդահամարային անձնակազմի անճիշտ գործողությունների, նախապատրաստական աշխատանքների դանդաղեցման կամ թշնամական տարրերի կողմից մարդահամարին դիմադրելու բոլոր դեպքերում ոժանդակող հանձնաժողովները պետք է անմիջապես հաղորդեն ժողտնտհաշվառչության շրջանային տեսուչներին կամ ժողովրդատնտեսական հաշվառման մարզային և կենտրոնական վարչությանը։

Մարդահամարը վերջանալուց հետո գյուղխորհուրդների անդամները գյուղական վայրերում հրահանգիչ-հսկիչի հետ միասին կմասնակցեն յուրաքանչյուր հաշվային տեղամասի բոլոր շենքերի համատարած կոնտրոլ շրջագայությանը, վորպեսզի ստուգեն ազգաբնակչության հաշվման ճշտությունը—չկա՞ արդյոք բաց թողնված շենքեր և բնակարաններ, մարդահամար չանցկացած անձինք, կամ ընդհակառակը, չկա՞ն արդյոք սխալմամբ յերկու անգամ ցուցակագրվածներ։



Յուրաքանչյուր խորհրդային քաղաքացի պետք է գիտենա, վոր նրա սեփական շահերը պահանջում են առավելագույն չափով ոժանդակել, ոգնել մարդահամարի անցկացմանը, վորի արդյունքները կծառայեն ամբողջ խորհրդային ժողովրդի բարեկեցության և կուլտուրայի հետագա բարձրացմանը։

Մարդահամարի գիտական ծրագիրը, վորը մշակված է խորհրդային կառավարության ղեկավար ընկեր Վ. Մ. Մոլոտովի անմիջական մասնակցությամբ, պետք է լրացվի աշխատանքի բոլշևիկյան կազմակերպումով և այն ժամանակ մարդահամարի հաջողությունը ապահովված կլինի։

## Ի՞ՆՉՊԻՍԻ ՀԱՐՑԵՐ ԵՆ ԼԻՆԵԼՈՒ ՄԱՐԴԱՀԱՄԱՐԻ ԹԵՐԹՈՒՄ ՅԵՎ Ի՞ՆՉՊԵՍ ՊԵՏՔ Է ՊԱՏԱՍԽԱՆԵԼ ՆՐԱՆՑ

Մարդահամարի թերթում կա 16 հարց։ Չնայած հարցերի պարզության ու հստակության, անհրաժեշտ է դրանք լայնորեն բացատրել ամբողջ ազգաբնակչությանը, վորպեսզի հնարավոր լինի խուսափել նրանց անճիշտ մեկնաբանման դեպքերից և վոչ ճշգրիտ ու անստույգ պատասխաններից։

Տեղեկությունները բոլորի մասին, բացառությամբ ծանր հիվանդների, ժամանակավոր բացակայողների և յերեխաների, պետք է ստացվեն անձամբ հարցումներ անելու ճանապարհով, առանց վորևէ փաստաթուղթ (անձնագիր, տեղեկանք և այլն) ներկայացնելու։

Մարդահամարի թերթում նախ և առաջ, գրի յե

առնվելու յուրաքանչյուր հարցման ենթարկվողի ազգանունը, անունը և հայրանունը: Այդ հարկավոր է նրա համար, որ ավելի ճիշտ հաշվի առնվի ազգաբնակչությունը և հնարավորություն լինի անհրաժեշտության դեպքում, ստուգել գրանցումների ճշտությունը կոնտրոլ շրջգայության ժամանակ, որը կատարելու են հրահանգիչ-հսկիչը մարդահամարից հետո: Յուրաքանչյուր անձի ազգանունը, անունը և հայրանունը գրվում են ամբողջապես, առանց որևէ կրճատման: Նորածին, դեռևս անուն չունեցող երեխաների համար գրվում է միայն ազգանունն ու հայրանունը: Հետո սկսում են մարդահամարի թերթի բուն հարցերը:

1-ԻՆ ՀԱՐՑ. ԱՌՆՉՈՒԹՅՈՒՆԸ ԸՆՏԱՆԻՔԻ ԳԼԽԱՎՈՐԻ ՀԵՏ (ԿԻՆԸ, ՏՂԱՆ, ՄԱՅՐԸ, ՔՈՒՅՐԸ, ՅԵՂԲՈՐ ԿԱՄ ՔՐՈՋՎՈՐԴԻՆ ՅԵՎ ԱՅԼՆ):

1937 թ. մարդահամարի ժամանակ այս հարցը չկար: Այժմ այն մտցված է մարդահամարի թերթի մեջ նրա համար, որպեսզի ապահովվի ամբողջ ազգաբնակչության առավելագույն լիակատար հաշվառումն ըստ յուրաքանչյուր ընտանիքի և տեղեկություններ ստացվեն ընտանիքների թվի, նրանց մեծության մասին, միայնակների թվի մասին և այլն: Այս հարցը ոչ մի առնչություն չունի հարկային, մթերման, բնակարանային գործերի հետ:

Ընտանիքի գլխավոր է համարվում նա, ով տալիս է գոյության գլխավոր միջոցները: Դա անպայման չպետք է լինի ընտանիքի ամենածեր անդամը կամ տղամարդը: Իբրև ընտանիքի գլ-



խավոր կարող է գրանցվել նաև ծնողների հետ ապրող որդին, կամ երեխաներին դաստիարակող մայրերը: Այն, թե ով պետք է գրանցվի, իբրև ընտանիքի գլխավոր, որոշում են իրենք՝ ընտանիքի անդամները, և հաշվարարը, պետք է գրանցի այն մարդուն, որին կմատնանշեն նրանք:

Ընտանիքի մնացած բոլոր անդամները գրանցվում են ըստ այն ազգակցական առնչության, որ ունեն նրանք իբրև ընտանիքի գլխավոր գրանցված մարդու հետ: Ընտանիք չունեցող միայնակների համար գրվում է «միայնակ» նշումը, իսկ այն մարդկանց համար, որոնք ունեն այլ տեղում ապրող ընտանիք, առաջին հարցի պատասխանի տեղ գիծ է քաշվելու: Այս կանոնի միատեսակ պահպանումը մեծ նշանակություն ունի մարդահամարի արդյունքների հաշվարկման ժամանակ:

2-ՐԴ ՀԱՐՑ. ՄՇՏԱԿԱՆ ԹԵ՞ ԺԱՄԱՆԱԿԱՎՈՐ Է ԲՆԱԿՎՈՒՄ ԱՅՍՏԵՂ.

3-ՐԴ ՀԱՐՑ. ԺԱՄԱՆԱԿԱՎՈՐ ԲՆԱԿՎՈՂԻ ՀԱՄԱՐ ՑՈՒՅՑ ՏԱԼ՝

Ա) ՄՇՏԱԿԱՆ ԲՆԱԿԱՎԱՅՐԸ

Բ) ՎՈ՞ՐՔԱՆ ԺԱՄԱՆԱԿ Է ԲԱՑԱԿԱՅՈՒՄ ՄՇՏԱԿԱՆ ԲՆԱԿԱՎԱՅՐԻՑ

4-ՐԴ ՀԱՐՑ. ԱՅՍՏԵՂ ՄՇՏԱԿԱՆ ԲՆԱԿՎՈՂԻ, ԲԱՅՑ ԺԱՄԱՆԱԿԱՎՈՐ ԲԱՑԱԿԱՅՈՂԻ ՆԿԱՏՄԱՄԲ ՆՇԵԼ «ԺԱՄԱՆԱԿԱՎՈՐ ԲԱՑԱԿԱՅՈՒՄ Է» ՅԵՎ ՑՈՒՅՑ ՏԱԼ, ԹԵ ԻՆ՞ՉՔԱՆ ԺԱՄԱՆԱԿ Է ԲԱՑԱԿԱՅՈՒՄ

Այս հարցերը 1937 թվի մարդահամարի ժամանակ չկային: Իսկ այժմ մարդահամարի ծրագրով նախատեսնված է արդյունքները հաշվարկելիս ազգաբնակչությունը բաժանել առկայի և մշտականի:

Առկա ազգաբնակչություն են համարվում այն

անձինք, վորոնք հունվարի 16-ի լույս 17-ի գիշերն անց են կացրել տվյալ շենքում, ներառյալ նաև ժամանակավոր ապրողները, ինչպես և նրանք, վորոնք ապրում են այդ շենքում, բայց այդ ժամանակ գտնվում են այլ տեղում՝ նույն քաղաքային, ավանային կամ գյուղական խորհրդի տերիտորիայում: Նույն առկա ազգաբնակչության շարքին են դասվելու այն քաղաքացիները, վորոնք հունվարի 16-ի լույս 17-ի գիշերը աշխատանքի յեն յեղել, թեկուզ և իրենց խորհրդի տերիտորիայի սահմաններից դուրս: Կամ գնացել են այնպիսի վայրեր, ուր նրանք չեյին կարող ցուցակագրվել (սայլորդություն, ջրաղաց, թատրոն, հյուր և այլն):

1937 թվի մարդահամարի ժամանակ, յերբ հաշվի յեր առնվում միայն առկա ազգաբնակչությունը, Ժողովրդական Տնտեսության Կենտրոնական Վարչության մեջ գործող ժողովրդի թշնամիները միտումնավոր խեղաթյուրել եյին այս հարցը: Նրանք կարգադրել եյին առկա ազգաբնակչության թվից հանել և մարդահամարի թերթերից ջնջել այն քաղաքացիներին, վորոնք հայտնապես չեյին կարող վոչ մի տեղ մարդահամարով անցկենալ և դրանով իսկ խեղաթյուրեցին մարդահամարի արդյունքները:

Առկա ազգաբնակչության հաշվառման համար նաև շատ կարևոր է, վոր մարդահամարի ժամանակ բաց չթողնվեն ժամանակավոր բնակվողները: Ժամանակավոր բնակվելու վերաբերյալ նշում պետք է արվի այն անձանց մասին, վորոնք սովորաբար բնակվում են այլ տեղում,



իսկ այնտեղ, ուր յեղել են մարդահամարի ժամանակ, բնակվում են վեց ամսից պակաս (յեկել են գործուղում, արձակուրդ, հյուր, ժամանակավոր, սեզոնային աշխատանքի և այլն): Իսկ յեթե տվյալ մարդը չունի այլ, մշտական բնակավայր, ապա նա ցուցակագրվում է իբրև մշտական բնակվող, թեկուզ և տվյալ վայրում վեց ամսից պակաս բնակած լինի: Սովորողները, վորոնք բնակվում են ուսման վայրում, ցուցակագրվում են այստեղ իբրև մշտապես բնակվողներ:

Ժամանակավոր կամ մշտական բնակվելու մասին նշում է արվում մարդահամարի թերթում անկախ այն բանից, թե ազգաբնակչությունն ինչպես է գրանցված տնային գրքույկներում: Կարող է այնպես պատահել, վոր իբրև ժամանակավոր բնակիչ գրանցված մարդը մարդահամարում հաշվի առնվի իբրև մշտական ազգաբնակչություն, քանի վոր ուրիշ տեղ նա բնակարան չունի: Սակայն, այս նշումը վոչ մի կերպ չի կապված բնակարանային տարածության իրավունքի հարցի հետ, և այն մարդը, վորը մարդահամարի ժամանակ գրանցվում է իբրև մշտական բնակիչ, ամենևին վորևե նոր իրավունք չի ստանում այդ տեսակետից:

Ժամանակավոր բացակայող են համարվում այն անձինք, վորոնք սովորաբար բնակվում են այստեղ, բայց ժամանակավորապես վոչ պակաս, քան վեց ամիս առաջ մեկնել են ժամանակավոր կամ սեզոնային աշխատանքի, գործուղման և այլն: Իրենց տանը նրանք համարվում են մշտական ազգաբնակչություն, բայց ժամանակավոր բացակայող, իսկ իրենց գտնվելու տեղում նրանք կլ-

անձինք, վորոնք հունվարի 16-ի լույս 17-ի գիշերն անց են կացրել տվյալ շենքում, ներառյալ նաև ժամանակավոր այցելուները, ինչպես և նրանք, վորոնք ապրում են այդ շենքում, բայց այդ ժամանակ գտնվում են այլ տեղում՝ նույն քաղաքային, ավանային կամ գյուղական խորհրդի տերիտորիայում: Նույն առկա ազգաբնակչության շարքին են դասվելու այն քաղաքացիները, վորոնք հունվարի 16-ի լույս 17-ի գիշերը աշխատանքի յեն յեղել, թեկուզ և իրենց խորհրդի տերիտորիայի սահմաններից դուրս: Կամ գնացել են այնպիսի վայրեր, ուր նրանք չեյին կարող ցուցակագրվել (սայլորդություն, ջրաղաց, թատրոն, հյուր և այլն):

1937 թվի մարդահամարի ժամանակ, յերբ հաշվի յեր առնվում միայն առկա ազգաբնակչությունը, Ժողովրդական Տնտեսության Կենտրոնական Վարչության մեջ գործող ժողովրդի թշնամիները միանգամայն խեղաթյուրել եյին այս հարցը: Նրանք կարգադրել եյին առկա ազգաբնակչության թվից հանել և մարդահամարի թերթերից ջնջել այն քաղաքացիներին, վորոնք հայտնապես չեյին կարող վոչ մի տեղ մարդահամարով անցկենալ և դրանով իսկ խեղաթյուրեցին մարդահամարի արդյունքները:

Առկա ազգաբնակչության հաշվառման համար նաև շատ կարևոր է, վոր մարդահամարի ժամանակ բաց չթողնվեն ժամանակավոր բնակվողները: Ժամանակավոր բնակվելու վերաբերյալ նշում պետք է արվի այն անձանց մասին, վորոնք սովորաբար բնակվում են այլ տեղում,



իսկ այնտեղ, ուր յեղել են մարդահամարի ժամանակ, բնակվում են վեց ամսից պակաս (յեկել են գործուղում, արձակուրդ, հյուր, ժամանակավոր, սեզոնային աշխատանքի և այլն): Իսկ յեթե տվյալ մարդը չունի այլ, մշտական բնակավայր, ապա նա ցուցակագրվում է իբրև մշտական բնակվող, թեկուզ և տվյալ վայրում վեց ամսից պակաս բնակած լինի: Սովորողները, վորոնք բնակվում են ուսման վայրում, ցուցակագրվում են այստեղ իբրև մշտապես բնակվողներ:

Ժամանակավոր կամ մշտական բնակվելու մասին նշում է արվում մարդահամարի թերթում անկախ այն բանից, թե ազգաբնակչությունն ինչպես է գրանցված տնային գրքույկներում: Կարող է այնպես պատահել, վոր իբրև ժամանակավոր բնակիչ գրանցված մարդը մարդահամարում հաշվի առնվի իբրև մշտական ազգաբնակչություն, քանի վոր ուրիշ տեղ նա բնակարան չունի: Սակայն, այս նշումը վոչ մի կերպ չի կապված բնակարանային տարածության իրավունքի հարցի հետ, և այն մարդը, վորը մարդահամարի ժամանակ գրանցվում է իբրև մշտական բնակիչ, ամենևին վորևե նոր իրավունք չի ստանում այդ տեսակետից:

Ժամանակավոր բացակայող են համարվում այն անձինք, վորոնք սովորաբար բնակվում են այստեղ, բայց ժամանակավորապես վոչ պակաս, քան վեց ամիս առաջ մեկնել են ժամանակավոր կամ սեզոնային աշխատանքի, գործուղման և այլն: Իրենց տանը նրանք համարվում են մշտական ազգաբնակչություն, բայց ժամանակավոր բացակայող, իսկ իրենց գալստյան տեղում նրանք կլ-

գրանցվեն իբրև առկա, բայց ժամանակավոր բնակվող ազգաբնակչություն։

Վերոհիշյալ իբրև ժամանակավոր բնակիչ գրանցված մարդը յուրաքանչյուր անգամ հաշվի չառնվի իբրև առկա ազգաբնակչություն տուն վերադառնալուց հետո (օրինակ՝ գործուղումից հետո) յուրաքանչյուր ժամանակավոր բնակվողի ձեռքը տեղեկանք է տրվելու մարդահամարն անցկացած լինելու մասին, որը պետք է պահել մինչև փետրվարի 15-ը և ներկայացնել հաշվարարին տանը նրան հանդիպելու ժամանակ։

Եթե այդ անձը հաշվարարին տեղեկանք ներկայացնի, ապա նա տվյալ մարդուն չի ցուցակագրում իբրև առկայի, այլ կցուցակագրի իբրև մշտական, բայց ժամանակավոր բացակայող բնակչի։ Իսկ եթե նրա մոտ այդպիսի տեղեկանք չլինի, ապա հաշվարարը պարտավոր կլինի նրա վերաբերմամբ կոնտրոլ բլանկ կազմել, որի համաձայն հետո կպարզվի, թե այդ քաղաքացին հունվարի 16-ի լույս 17-ի գիշերը մարդահամարն անց է կացել արդյոք իր գտնվելու վայրում։ Եթե պարզվի, որ այդ մարդը այնուամենայնիվ ցուցակագրվել է, ապա կոնտրոլ բլանկը կվոչնչացվի։ Իսկ եթե պարզվի, որ նա ցուցակագրված չի եղել, ապա տեղեկությունները կոնտրոլ բլանկից կփոխադրվեն մարդահամարի թերթը։

Այս բոլոր միջոցառումները, մեկ նպատակ են հետապնդում—մարդահամարի ժամանակ բաց չթողնել ոչ մի մարդու։

Մարդահամարի ժամանակ յուրաքանչյուր մարդ հաշվի յե առնվելու իբրև առկա ազգաբնակչու-



թյուն, և իբրև մշտական ազգաբնակչություն։ Բայց այս չի նշանակում, որ ազգաբնակչության թիվը ավելացվելու յե կրկնակի, որովհետև այս կատեգորիաներից յուրաքանչյուրում (առկա կամ մշտական ազգաբնակչություն) մարդն ընկնում է միայն մեկ անգամ։

Այսպես, օրինակ, յեթե Իվանովը մարդահամարի ժամանակ տանն է յեղել, ապա նա միևնույն մարդահամարի թերթում հաշվի յե առնվելու թե իբրև առկա և թե իբրև մշտական բնակիչ։

Յեթե մշտապես Մոսկվայում ապրող Պետրովը մարդահամարի մոմենտին գործուղման մեջ է Տուլայում, ապա Մոսկվայում նա հաշվի կառնվի իբրև մշտական բնակիչ նշում անելով ժամանակավոր բացակայելու մասին, իսկ Տուլայում՝ իբրև առկա բնակիչ՝ նշում անելով ժամանակավոր բնակվելու մասին։

Այն հիվանդները, վորոնք բուժվում են հիվանդանոցներում և սանատորիաներում, հանգստյան տներում հանգստացողները, ծննդատներում գտնվողները, ցուցակագրվում են այդ հիմնարկություններում վորպես ժամանակավոր բնակվողներ, իսկ տներում ժամանակավոր բացակայողներ (բացառությամբ մշտապես հիվանդանոցում ապրող խրոնիկական հիվանդների)։

Այն անձինք, վորոնք ուրիշ տեղ են փոխադրվել մշտապես բնակվելու, Կարմիր Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի շարքերում գտնվողները, ուսման վայրում ապրող սովորողները, թեկուզ բոլորն էլ այնտեղ գտնվելիս լինեն վեց ամսից պակաս, մարդահամարի թերթիկում իրենց նախ-

կին բնակության վայրում ամենևին չեն մտցվում։ Մարդահամարի թերթերի մեջ իրենց նախկին բնակության վայրում չեն մտցվում նաև այն անձինք, վորոնք այնտեղից դուրս են յեկել ավելի քան վեց ամիս առաջ, այսինքն՝ 1938 թվի հուլիսի 17-ից առաջ. թեկուզ և նրանց մասին հայտարարված լինի, թե ժամանակավոր են հեռացել։

Այն անձինք, վորոնք գտնվում են կալանավայրերում, ցուցակագրվում են ըստ իրենց գտնվելու վայրի։

Ազգաբնակչության առկայի և մշտականի բաժանելը ժողովրդատնտեսական շատ մեծ նշանակություն ունի։ Առկա ազգաբնակչության թվի վերաբերյալ տվյալները հարկավոր են, որինակ՝ աշխատավորների դեպուտատների խորհուրդների ընտրությունների հաշվարկումների համար, քանի վոր 18 տարեկանի հասած յուրաքանչյուր քաղաքացի ընտրություններին մասնակցում է իր բնակության վայրում, թեկուզ և դա լինի ժամանակավոր։ Այդ նույն տվյալներն հարկավոր են առևտրի և հասարակական սննդի պլանավորման համար և այլն։

Մշտական ազգաբնակչության թվի վերաբերվող տեղեկությունները հարկավոր են դպրոցական ցանցի, բնակարանային շինարարության պլանավորման համար և այլն։

5-ՐԴ ՀԱՐՑ. ՍԵՌԸ (ԱՐԱԿԱՆ, ԻԳԱԿԱՆ).

Այս հարցը լրացուցիչ բացատրություններ չի պահանջում։ Իսկ ազգաբնակչության ըստ սեռա-



կան կազմի հաշվի առնելը էական նշանակություն ունի պետության համար։ Մարդահամարի հետևանքով վորոշվելու յե տղամարդկանց և կանանց թիվը մեր յերկրում։

Կինը մեր յերկրում մեծ ուժ է։ Ստալինյան Սահմանադրության համաձայն՝ «Կնոջը ԽՍՀՄ-ում տղամարդուն հավասար իրավունքներ են տրվում տնտեսական, պետական, կուլտուրական ու հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում։

Կանանց այդ իրավունքների իրականացման հնարավորությունն ապահովվում է տղամարդուն հավասար իրավունք տալով աշխատանքի, աշխատանքի վարձատրության, հանգստի, սոցիալական ապահովագրության ու կրթության ասպարեզում, մոր ու մանկան շահերի պետական պաշտպանությամբ, կնոջը հղիության ժամանակ արձակուրդ տալով՝ պահպանելով աշխատավարձը, ծննդատըների, մանկամսուրների ու մանկապարտեզների լայն ցանցով[1]»։

1936 թվին ժողովրդական տնտեսության մեջ զբաղված էյին 8492 հազար կանայք, կամ բանվորների և ծառայողների ընդհանուր թվի 34%-ը։

1897 թվի մարդահամարը ցույց տվեց, վոր աշխատող կանանց ընդհանուր թվի 80%-ը կազմում էյին բատրակուհիները, սպասուհիները և օրավարձու բանվորուհիները, այսինքն կատարում էյին ամենածանր, քիչ վարձատրվող աշխատանքը։

[1] Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրությունը (Հիմնական Օրենքը), հոդ. 122։

Արդյունաբերության մեջ այն ժամանակ զբաղված էր աշխատող կանանց ընդհանուր թվի 13%-ը միայն և լուսավորության ու առողջապահության ցանցում՝ 4%-ը միայն:

1936 թվին աշխատող կանանց 39%-ն արդեն զբաղված էր սոցիալիստական արդյունաբերության մեջ, 20%-ը լուսավորության ու առողջապահության հիմնարկներում և միայն 2%-ը վորպես տնային աշխատողներ: Կոլտնտեսությունները կնոջ համար ապահովում են տնտեսական ինքնուրույնություն. 1936 թվին կոլտնտեսուհի կանայք վաստակել են աշխօրերի ընդհանուր թվի 35,8%-ը: Կանայք ակտիվ մասնակցում են պետական կյանքի բոլոր բնագավառներում: Նրանցից շատերն ընտրված են ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի և միութենական ու ինքնավար հանրապետությունների Գերագույն Խորհուրդների դեպուտատներ:

Ազգաբնակչության Համամիութենական մարդահամարը մեկ անգամ էլ ցույց կտա խորհրդային կանանց վորպես մեծ ուժ:

## 6-ՐԴ ՀԱՐՑ. ՔԱՆԻ՞ ՏԱՐԻՆ Է ԼՐԱՑԵԼ ԾՆՆԴՅԱՆ ՈՐԻՑ, ԻՍԿ ՄԵԿ ՏԱՐԵԿԱՆԻՑ ՓՈՔՐ ՅԵՐԵԽԱՆԵՐԻ ՀԱՄԱՐ՝ ԱՄԻՍԸ

Թվում է՝ թե այս հարցն էլ վոչ մի լրացուցիչ բացատրություն չի պահանջում: Սակայն, անցյալ մարդահամարների փորձը ցույց է տալիս, վոր այս հարցին տրվում են վոչ ճշգրիտ, կլորացված պատասխաններ: Այսպես, որինակ 1926 թվի մարդահամարի նյութերից յերևում է, վոր այն կանայք, վորոնք դեռևս չեն հասել 30 տարե-



կանի, և նրանք, վորոնց 31 տարին արդեն լրացել է, կլորացնում եյին իրենց տարիքը և հաշվարարին ասում, թե 30 տարեկան են: Նույնն անում եյին նաև տղամարդիկ, գլխավորապես ավելի մեծ տարիքի տեր մարդիկ: Այս ամենը խանգարում է հաշվառման տեղեկությունների ճշգրտությանը: Ազգաբնակչությունը պետք է գիտենա այս մասին և թույլ չտա տարիքը կլորացնել. յեթե, որինակ մարդը 34 տարեկան և 11 ամսական է, ապա չի կարելի ասել 35 տարեկան, այլ պետք է ասել 34, կամ յեթե 51 տարեկան է, ապա չի կարելի այդ տարիքը կլորացնելով դարձնել հիսուն և այլն:

## 7-ՐԴ ՀԱՐՑ. ԱԶԳՈՒԹՅՈՒՆԸ

Մարդահամարի վերաբերյալ հրահանգի համաձայն այստեղ գրանցվում է ազգությունը, վորին ինքն իրեն հարցման յենթարկվողը պատկանող է համարում:

Մեր բազմազգ պետության մեջ, ուր յուրաքանչյուր ազգն իրավահավասար է հանդիսանում, այս հարցը խոշորագույն նշանակություն ունի: Ըստ 1926 թվի մարդահամարի՝ Խորհրդային Միության մեջ հաշվվում են 185 տարբեր ժողովուրդներ (մոտ 60 ազգային խմբեր): Մարդահամարի թերթի մյուս հարցերի (գրագիտության մասին, զբաղմունքների մասին և այլն) հետ զուգադրելով մարդահամարը մեզ կտա մեր մեծ Խորհրդային Միության մեջ բնակվող ազգությունների փայլուն ծաղկման և բարգավաճման պատկերը, վորպես արդյունք Ստալինյան Սահմանա-

դրության մեջ արտահայտված լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության իրականացման։

Կապիտալիստական, մանավանդ ֆաշիստական յերկրներում միշտ և ամենուրեք մարդահամարն արձանագրում է ոչ թե ազգային, այլ ցեղային կազմը, մորթի գույնը։ «Ոչ-մաքուր ռասայի» ներկայացուցիչների նկատմամբ ծաղրանքն այնտեղ է հասնում, որ նրանց համար նույնիսկ մարդահամարի թերթերը տպագրում են հատուկ գույնի թղթի վրա։

Իր ազգային պատկանելիության ոչ մի ինքնորոշման մասին կապիտալիզմի յերկրներում խոսք անգամ լինել չի կարող։ Ավելին, բուրժուական վիճակագիրները, իրենց տերերին գոհունակություն պատճառելու նպատակով, ամենաանխիղճ կերպով խարդախում են մարդահամարի ժամանակ ստացված տեղեկությունները։ Այսպես օրինակ՝ հայտնի յե, որ ֆաշիստական Լեհաստանում մարդահամարի ժամանակ խելքներին փչեց անհագին քանակությամբ ուկրաինացիներին դասել լեհերի շարքը։ Այդ «ձեռքի ճարպիկության» հետևանքով Արևմտյան Ուկրաինայում, Լեհաստանում 6,8 միլիոն ուկրաինացիների փոխարեն, որոնք փաստորեն բնակվում են այնտեղ, դուրս յեկավ միայն 3,8 միլիոն, իսկ «լեհերի» թիվը 1 միլիոնից բարձրացավ 3,2 միլիոնի։

8-ՐԴ ՀԱՐՑ ՄԱՅՐԵՆԻ ԼԵԶՈՒՆ

Ինչպես ազգության վերաբերյալ հարցում, այստեղ էլ գրվում է այն լեզվի անունը, որն ինքը,



հարցման յենթարկվողը համարում է իր մայրենի լեզուն։ Դեռ խոսել չկարողացող յերեխաների համար իբրև մայրենի լեզու գրանցվում է այն լեզուն, որով սովորաբար խոսում են ընտանիքում։

Ցարական Ռուսաստանում փոքր ազգությունների լեզվի զարգացմանը ոչ միայն չեյին աջակցում, այլև, ընդհակառակը, տեղական ազգային լեզուն ամեն կերպ վտարվում եր առորյա գործածությունից։

Ազգային փոքրամասնությունների մարդկանց հանդեպ էլ ավելի բարբարոսական վերաբերմունք է զարգանում ֆաշիզմի կողմից ստրկացված յերկըրներում։ Իսպանիայում ծավալված պատերազմական գործողությունների ճակատից թղթակիցները գրում են, որ գազանացած ֆաշիստներն իրենց գրաված տերիտորիայում սպանում են քաջարի կատալոնցիներին միայն նրա համար, որ նրանք «համարձակվում են» նրանց պատասխանել իրենց մայրենի լեզվով։ Լեհաստանում դուրս է քշվում ուկրաինցիների լեզուն այն դպրոցներից, ուր սովորում են ուկրաինցիների յերեխաները։

Մեզ մոտ, ՍՍՀՄ-ում, մեծ, ազատ, հզոր ռուսերեն լեզվի զարգացման հետ միասին, չտեսնված զարգացում են ստանում բոլոր մյուս ազգությունների լեզուները։ Շատ ազգություններ խորհրդային իշխանության օրոք առաջին անգամ գիր ստացան։ Չտեսնված բազմամիլիոն տիրաժներով գրականություն է լույս տեսնում ազգային լեզուներով։ Ազգային լեզուներով բոլոր հրատարակությունների տիրաժը 1913 թվին

կազմում էր 6,5 միլիոն օրինակ, իսկ 1936 թվին՝ 132,9 միլիոն օրինակ, այսինքն 20 անգամով ավելի։

9-ՐԴ ՀԱՐՑ. ԱՄՈՒՍՆԱՑԱ՞Ծ Ե, ԹԵ՞ ՎՈՉ

*Դրական պատասխան («այո») տալիս են այն անձինք, վորոնք ամուսնացած են, անկախ այն բանից՝ ամուսնությունը գրանցված է, թե վոչ։ Բացասական պատասխան («վոչ») գրվում է չամուսնացածների, այրիների և ապահարզանվածների նկատմամբ։ Ամուսնության վերաբերյալ հարցի պատասխանները, անտարակույս, կհաստատեն ամուսնությունների աճման, խորհրդային ընտանիքի ամրացման փաստերը։*

10-ՐԴ ՀԱՐՑ. ՎՈ՞Ր ՊԵՏՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔԱՑԻ ՑԵ

*Այս հարցին ԽՍՀՄ յուրաքանչյուր քաղաքացին հպարտությամբ կպատասխանի՝ «Խորհրդային», և այդպես էլ կգրվի մարդահամարի թերթում։ Ըստ ԽՍՀՄ Սահմանադրության, միութենական հանրապետությունների բոլոր քաղաքացիների համար սահմանված է միասնական խորհրդային քաղաքացիություն, ուստի միութենական հանրապետությունների մասին նշումներ չեն արվելու։*

*Այս հարցը նպատակ ունի նաև հաշվել ԽՍՀՄ-ում ապրող օտարերկրացիներին, վորոնք կմատնանշեն այն պետության անունը, վորի քաղաքացիներն են հանդիսանում։ Այս առնչությամբ անհրաժեշտ է նկատել, վոր ԽՍՀՄ-ի այն քաղաքացիները, վորոնք արտասահմանումն են ապրում,*



*1939 թվի մարդահամարի ժամանակ, մարդահամարի թերթերի մեջ չեն մտցվելու, բացառությամբ նրանց, վորոնք խորհրդային նավերով ճանապարհորդության մեջ են գտնվում (մեր նավը, վորտեղ էլ նա գտնվելիս լինի, համարվում է խորհրդային տերիտորիա)։ Այդպիսիքն են միջազգային վիճակագրական կոնգրեսների սահմանած կանոնները, վոր մենք անդավաճան կերպով պահպանում ենք, ինչպես մյուս բոլոր միջազգային պայմանագրերն ու պարտավորությունները։*

11-ՐԴ ՀԱՐՑ. ԳՐԱԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ.

Ա) ՎՈՐԵՎԵ ԼԵԶՎՈՎ ԳՐՈՒՄ ՅԵՎ ԿԱՐԴՈՒՄ Ե, ԹԵ՞ ՄԻԱՅՆ ԿԱՐԴՈՒՄ

Բ) ԹԵ՞ ԲՈԼՈՐՈՎԻՆ ԱՆԳՐԱԳԵՏ Ե

*1937 թվի մարդահամարի ժամանակ գրագիտության վերաբերյալ հարցին հաճախ վոչ-ճիշտ պատասխան եյին գրում, քանի վոր վոմանք, վորոնք միայն կարդալ գիտեյին և չեյին կարողանում գրել կամ վատ եյին գրում, համեստությունից յելնելով իրենց անգրագետ եյին կոչում։ Այդ, իհարկե, ճիշտ չե։ Այն մարդիկ, վորոնք մի վորևե լեզվով (վոչ միայն ռուսերենով) կարողանում են կարդալ, թեկուզ և դանդաղ, գրագետ են հանդիսանում, և մարդահամարի թերթում նրանց մասին համապատասխան գրանցում կարվի։*

*Յերեք թվանշան բնորոշում են ազգաբնակչության գրագիտության վիճակը մեր յերկրում.*

*1897 թ. մարդահամարով գրագետները 13 % եյին*
*1926 » » » 39 % եյին*
*և, ըստ վոչ լրիվ տվյալների, 1937 թվին գրագետները 90 %-ից ավելի եյին։*

*1939 թվի մարդահամարը ցույց կտա անգրագետների անընդհատ նվազող թիվը, նրանց գտնվելու տեղը և կոգնի արագորեն ավարտել նրանց ուսուցումը։*

12-ՐԴ ՀԱՐՑ. ՍՈՎՈՐՈՂԻ ՆԿԱՏՄԱՄԲ ՑՈՒՅՑ ՏԱԼ՝

Ա) ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹՅԱՆ, ԴՊՐՈՑԻ ԿԱՄ ԴԱՍԸՆԹԱՑՆԵՐԻ ԼՐԻՎ ԱՆՈՒՆԸ՝

Բ) ՎՈՐ ԴԱՍԱՐԱՆՈՒՄ ԿԱՄ ՎՈՐ ԿՈՒՐՍՈՒՄ Է ՍՈՎՈՐՈՒՄ (ՄԵԿ ՏԱՐՈՒՑ ՊԱԿԱՍ ՈՒՍՄԱՆ ՏԵՎՈՂՈՒԹՅՈՒՆ ՈՒՆԵՑՈՂ ԴԱՍԸՆԹԱՑՆԵՐԻ ՆԿԱՏՄԱՄԲ ՆՇԵԼ «ԿԱՐՃԱՏԵՎ»)։

*Կրթության իրավունքը, որ նվաճել է խորհրդային ժողովուրդը և որը գրված ու ամրացված է Ստալինյան Սահմանադրության մեջ, լայնորեն ոգտագործվում է մեր յերկրի ազգաբնակչության կողմից։ 1914 թվին տարրական և միջնակարգ դպրոցներում սովորում եյին 8 միլիոն յերեխաներ, իսկ 1936/37 ուսումնական տարում այնտեղ սովորում եյին 28,8 միլիոն հոգի, համարյա 4 անգամ ավելի։*

*Բարձրագույն ուսումնական հաստատություններում 1914 թվին սովորում եյին 112 հազար հոգի, առավելապես բուրժուազիայի, ազնվականների, բարձրաստիճան չինովնիկների զավակներ։ 1936/37 ուսումնական տարում խորհրդային բուհերում կային 542 հազար ուսանողներ, համարյա 5 անգամով ավելի, քան մինչև հեղափոխությունը։ Մեր բուհերում սովորում են աշխատավորների զավակները։ Ուսանողների թիվը մեր յերկրում 140 հազարով ավելի յե, քան Անգլիայում, Ֆրանսիայում, Գերմանիայում, Իտալիայում և Ճապոնիայում միասին վերցրած։*



*Բայց ստացիոնար տիպի տարրական, միջնակարգ և բարձրագույն դպրոցները չեն սպառում ուսումնական հաստատությունների բոլոր տեսակները ԽՍՀՄ-ում։ Նրանցից բացի, գոյություն ունեն բազմաթիվ տարբեր կուրսեր, դպրոցներ մեծահասակների համար, հեռակա և յերեկոյան ուսումնական հաստատություններ։ Դրա համար ել 12-րդ հարցին պատասխանում են բոլոր ցերեկային, յերեկոյան և հեռակա ուսումնական հաստատությունների և կուրսերի սովորողները, անկախ այն բանից՝ արտադրությունից կտրված, թե արտադրությունից առանց կտրվելու յեն սովորում։ Մարդահամարի թերթում, սակայն նշումներ չեն արվում կարճատև կուրսերում (մեկ ամսից պակաս տևողությամբ) և զանազան խմբակներում սովորողների մասին։*

13-ՐԴ ՀԱՐՑ. ԱՎԱՐՏԵ՞Լ Է ԱՐԴՅՈՔ ՄԻՋՆԱԿԱՐԳ ԿԱՄ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ԴՊՐՈՑ (ՆՇԵԼ «ՄԻՋՆ.», «ԲԱՐՁՐԱԳ.»)։

*Միջնակարգ և բարձրագույն դպրոցներում սովորող միլիոնավոր մարդկանցից բացի, ահագին թվով քաղաքացիներ արդեն կարողացել են վերջացնել կրթությունը։ Հենց միայն խոշոր արդյունաբերության մեջ 1937 թվին հաշվվում եյին 578 հազար ինժեներա-տեխնիկական աշխատողներ։ Իսկ միջնակարգ և բարձրագույն կրթությամբ ինչքան մարդիկ աշխատում են ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում։ Մարդահամարը կտա այնպիսի տեղեկություններ, վորոնք անհրաժեշտ են ել ավելի լավ ոգտագործելու*

համար կադրերը—սոցիալիստական հասարակության այդ ամենաարժեքավոր կապիտալը։

Միջնակարգ դպրոց ավարտելու վերաբերյալ գրանցումը պետք է արվի մարդահամարի թերթում միջնակարգ ուսումնական հաստատություն (յոթնամյակ, իննամյակ, տասնամյակ, տեխնիկում, բանֆակ և այլն) ավարտած բոլոր քաղաքացիների, միջնակարգ դպրոցի 8-րդ, 9-րդ ու 10-րդ դասարաններում սովորողների կամ բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորած և սովորող, բայց այն չավարտած անձանց նկատմամբ։ Բարձրագույն դպրոցի ավարտման վերաբերյալ նշումն արվում է բոլոր այն անձանց նկատմամբ, վորոնք բարձրագույն ուսումնական հաստատությունն ավարտել են, անկախ այն բանից՝ ավարտումը յեղել է մինչև հեղափոխությունը, թե խորհրդային ժամանակամիջոցում, մարդը սովորում է ստացիոնար, հեռակա, թե յերեկոյան ուսումնական հաստատությունում, կամ քննությունները տվել է եքստերն կերպով։

## 14-ՐԴ ՀԱՐՑ. ԶԲԱՂՄՈՒՆՔՆԵՐԻ (ԾԱՌԱՅՈՒԹՅԱՆ) ՏԵՍԱԿԸ ԿԱՄ ԱՊՐՈՒՍՏԻ ՄԻՋՈՑՆԵՐԻ ԱՅԼ ԱՂԲՅՈՒՐԸ ՆԵՐԿԱՅՈՒՄՍ

Այս հարցի պատասխանը լրացվում է բոլոր անձանց նկատմամբ, անկախ զբաղմունքների տեսակից և ապրուստի միջոցների աղբյուրից։ Այստեղ գրվում է զբաղմունքի կամ ծառայության մանրամասն անունը, ապրուստի միջոցների աղբյուրի անունը—կենսաթոշակ, թոշակ, սենյակ-



ները վարձով տալուց ստացված յեկամուտը, կամ խնամքի տակ լինելու վիճակը։

1926 թվի մարդահամարի ժամանակից վիթխարի փոփոխություններ են տեղի ունեցել ԽՍՀՄ ազգաբնակչության զբաղմունքների մեջ։ Իսպառ անհետացել են մասնավոր ձեռնարկատերերը, առևտրականները և այլ շահագործողները։ Ամենևին գործազուրկ չկա։ Այդ նույն ժամանակամիջոցում ուժեղ չափով ավելացել է վորակյալ պրոֆեսիաների թիվը։ Փականագործները 1926 թվին 317 հազար հոգի եյին, իսկ 1937 թվին, ըստ վոչ-լրիվ տվյալների, նրանք 1 միլիոն 100 հազարից ավելի եյին, մետաղի խառատները 69 հազար հոգի եյին, դարձան 370 հազարից ավելի. դարբինները 125 հազար հոգի եյին, դարձան 500 հազարից ավելի. մոնտյորները և ելեքտրոմոնտյորները 68 հազար եյին, դարձան 400 հազարից ավելի։ Ուսուցիչների թիվն այդ ժամանակամիջոցում ավելացավ 300%-ով, բժիշկներինը՝ 200, ինժեներներինն ու ճարտարապետներինը՝ 800, ագրոնոմներինը՝ 500%-ով։

Գյուղատնտեսության մեջ առաջացան նոր կայուն պրոֆեսիաներ՝ կոլտնտեսության նախագահ, տրակտորիստ, դաշտավարական բրիգադի բրիգադիր, անասնապահական ֆերմայի վարիչ, խրճիթ-լաբորատորիայի վարիչ, կթողներ, հորթապահներ, խոզապահներ և այլն։

Այս բոլոր պրոֆեսիաների առաջացումը արդյունք է մեր ամբողջ ժողովրդական տնտեսության սոցիալիստական վերակառուցման, վոր

տեղի ունեցավ ստալինյան յերկու հնգամյակների տարիներում։

1937 թվի մարդահամարի նյութերի մշակման համար կազմված զբաղմունքների բառարանում, որ լույս ընծայեցին վնասարարները, ամենևին չկային այնպիսի հանրածանոթ և լայն տարածված զբաղմունքներ, ինչպես կոլտնտեսությունների նախագահները և այլն։

Դրա հետ մեկտեղ, բառարանի մեջ էին մըտցված այնպիսի «պրոֆեսիաներ», վորոնք վաղուց անհետացել են խորհրդային յերկրի յերեսից, ինչպես պոռնիկ, թափառաշրջիկ, լաքեյ։ Առաջիկա մարդահամարի խնդիրը կայանում է նրանում, վոր սահմանվեն մեր պետության յուրաքանչյուր բնակչի իսկական զբաղմունքներն ու գոյության միջոցների աղբյուրները։

15-ՐԴ ՀԱՐՑ. ԱՇԽԱՏԱՆՔԻ ՎԱՅՐԸ (ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅԱՆ, ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ, ՀԻՄՆԱՐԿՈՒԹՅԱՆ ԱՆՈՒՆԸ)

Այստեղ առանձնապես կարևոր է, վոր աշխատանքի վայրն անվանվի առանց վորևե կրճատման, վորովհետև այդ գրանցումների հիման վրա, մարդահամարի արդյունքները հաշվարկելիս, կատարվելու յե աշխատողների բաշխումն ըստ ժողովրդական տնտեսության ճյուղերի։ Մենք կիմանանք, թե քանի մարդ է աշխատում արդյունաբերության զանազան ճյուղերում, տրանսպորտում, խորհտնտեսություններում, կոլտնտեսություններում, իր անհատական տնտեսության մեջ, արհեստագործական կոոպերացիայում, առև-



տրում, ժողովրդական լուսավորության և առողջապահության հիմնարկներում և այլն։

16-ՐԴ ՀԱՐՑ. ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՎՈՐ ԽՄԲԻՆ Ե ՊԱՏԿԱՆՈՒՄ՝ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ, ԾԱՌԱՅՈՂՆԵՐԻ, ԿՈԼՏՆՏԵՍԱԿԱՆՆԵՐԻ, ԿՈՈՊԵՐԱՑՎԱԾ ՏՆԱՅՆԱԳՈՐԾՆԵՐԻ, ՄԵՆԱՏՆՏԵՍ-ԳՅՈՒՂԱՑԻՆԵՐԻ, ՉԿՈՈՊԵՐԱՑՎԱԾ ՏՆԱՅՆԱԳՈՐԾՆԵՐԻ, ԱԶԱՏ ՊՐՈՖԵՍԻԱՆԵՐԻ ՏԵՐ ՄԱՐԴԿԱՆՑ, ԹԵ ԿՐՈՆԱԿԱՆ ՊԱՇՏԱՄՈՒՆՔԻ ՍՊԱՍԱՎՈՐՆԵՐԻ ՅԵՎ ՎՈՉ ԱՇԽԱՏԱՎՈՐԱԿԱՆ ՏԱՐՐԵՐԻ ԽՄԲԻՆ

Մարդահամարի թերթի այս յեզրափակիչ հարցը քաղաքական վիթխարի նշանակություն ունի։ Այս հարցի պատասխանները ցույց կտան ազգաբնակչության բաժանումն ըստ հասարակական խմբերի։ Մենք գիտենք, վոր շահագործող դասակարգերը ԽՍՀՄ-ում վոչնչացված են վերջնականապես և անվերադառնալիորեն։ Մեզանում չկան կալվածատերեր, քաղաքային բուրժուազիա, առևտրականներ և կուլակներ։ Մենք կիմանանք ԽՍՀՄ-ի յերկու մեծ յեղբայրական դասակարգերի—բանվորների դասակարգի և գյուղացիների դասակարգի կազմը. մենք կստանանք խորհրդային ինտելիգենցիայի մանրամասն բնութագրությունը. հայտնի կլինի մնացած հասարակական խմբերի կազմը։

1937 թվի մարդահամարի ժամանակ վնասարարները գիտակցաբար խեղաթյուրում եյին ազգաբնակչության դասակարգային կազմը, աշխատում եյին պակասեցնել բանվոր դասակարգի և կոլտնտեսական գյուղացիության թիվը։

Նկատի ունենալով այն բացառիկ կարևորու-

թյունը, որ ներկայացնում է այս հարցը, անհրաժեշտ է մի քանի ցուցումներ բերել ԽՍՀՄ Ժողկոմխորհի հաստատած մարդահամարային հրահանգից։

Կոլտնտեսության այն անդամները, վորոնք մարդահամարի պահին ժամանակավոր աշխատանքով զբաղված են արդյունաբերության, շինարարության, փայտամթերումների մեջ և այլն, բայց մշտապես աշխատում են կոլտնտեսության մեջ, գրանցվում են իբրև կոլտնտեսականներ։

Կոլտնտեսության այն անդամները, վորոնք մշտական աշխատանքով են զբաղվում արդյունաբերության, շինարարության մեջ, հիմնարկություններում և այլն, չեն աշխատում կոլտնտեսության մեջ, կամ մասամբ են մասնակցում կոլտնտեսության աշխատանքներին արձակուրդի ժամանակ և հանգստյան օրերին—գրանցվում են «բանվոր» (կոլտնտեսության անդամ) կամ «ծառայող» (կոլտնտեսության անդամ)։

Կոլտնտեսականների ընտանիքների այն անդամները, վորոնք աշխօրեր չունեն կոլտնտեսության մեջ և զբաղված են անասունների խնամքով ու գյուղատնտեսական աշխատանքներով իրենց ոժանդակ տնտեսության մեջ, դասվում են կոլտնտեսականների շարքը։

Այն անձինք, վորոնք արհեստագործական և ձկնորսական կոոպերացիայի բոլոր տեսակի արտելների, հաշմանդամների կոոպերացիայի արտելների անդամներ են, դասվում են կոոպերացված տնայնագործների և վոչ թե բանվորների ու ծառայողների շարքը։



Այն անձինք, վորոնք վարձով աշխատում են արհեստագործական ձկնորսական կոոպերացիայի և հաշմանդամների կոոպերացիայի ձեռնարկություններում, արտելի փայատեր անդամ չեն հանդիսանում, նրանք կոոպերացված տնայնագործների շարքը չեն դասվում, այլ դասվում են համապատասխան կերպ բանվորների և ծառայողների շարքը։

Մենատնտեսների հասարակական խումբն են դասվում այն անձինք, վորոնք կոլտնտեսությունների, արհեստագործական, ձկնորսական կոոպերացիայի կամ հաշմանդամների կոոպերացիայի անդամ չեն, անհատական գյուղատնտեսություն են վարում այն պայմանով, վոր դա նրանց գլխավոր զբաղմունքն է հանդիսանում։ Մենատնտեսների հասարակական խումբն են դասվում նաև այդ մարդկանց բոլոր խնամառուները։

Մենատնտեսների ընտանիքների այն անդամները, վորոնք ապրուստի միջոցների ինքնուրույն աղբյուր ունեն անհատական գյուղացիությունից դուրս, դասվում են վոչ թե մենատնտեսների, այլ մյուս հասարակական խմբերի շարքը, նայած նրանց զբաղմունքներին։

Ոժանդակ գյուղատնտեսություն ունեցող բանվորներն ու ծառայողները (անկախ նրա ծավալից, յեկամտաբերությունից և այն բանից՝ գյուղատնտեսական հարկով հարկվում են, թե վոչ), մենատնտեսների շարքը չեն դասվում։ Մենատնտեսների շարքը չեն դասվում նաև այդ անձանց բոլոր խնամառուները, թեկուզ և նրանք զբաղված լինեն միայն ոժանդակ գյուղատնտեսությամբ։

Ազատ պրոֆեսիաների տեր մարդկանց խումբն են դասվում այն անձինք, վորոնց աշխատանքն իր բնույթով չի կազմված վորոշ հիմնարկության կամ ձեռնարկության մեջ մշտական աշխատանք կատարելու հետ (գրողներ, կոմպոզիտորներ, նկարիչներ, փաստաբաններ և այլն)։

Վոչ աշխատավորական տարրերի շարքն են դասվում վերավաճառողները, վորևե այլ վոչ աշխատավորական յեկամուտի հաշվին ապրող անձինք, այլև հարցման յենթարկվողներից նրանք, վորոնք չեն կարող մատնանշել իրենց ապրուստի միջոցների աղբյուրը։ Վոչ մի դեպքում չպետք և վոչ աշխատավորական տարրերի շարքը դասել աշխատունակությունը կորցրածներին, ինչպես նաև այն անձանց, վորոնք գտնվում են աշխատավորների խնամքի տակ։

Խնամառուները դասվում են հասարակական այն խմբի մեջ, վորի մեջ դասվում են այն անձինք, վորոնց խնամքի տակ են նրանք գտնվում։

Կենսաթոշակավորներն ու թոշակառուները դասվում են այն հասարակական խմբին, վորին նրանք պատկանել են նախքան կենսաթոշակի կամ թոշակի անցնելը։ Այն թոշակառուները, վորոնք մինչև թոշակի անցնելը վոչ մի տեղ չեն աշխատել, դասվում են այն անձանց հասարակական խմբին, վորոնց խնամքի տակ են նրանք գտնվել։

*
* *

Խորհրդային սոցիալիստական պետությունը 1939 թվի Համամիութենական մարդահամարի նախօրյակին և գտնվում։ ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ կու-



սակցությունը և Խորհրդային կառավարությունը անց են կացնում մեր հայրենիքի անծայրածիր հարստությունների ստեղծողի և տիրոջ՝ հզոր և յերջանիկ խորհրդային ժողովրդի ծաղկափթիթ ուժերի գլխավոր ստուգատես։

Մարդահամարի նախապատրաստումը համաժողովրդական բնույթ և ստանում։ Մարդահամարի օրինակելի անցկացումը վոչ միայն խորհրդային վիճակագիրների ամբողջ ապարատի, այլ և բոլոր կուսակցական և խորհրդային կազմակերպությունների, խորհրդային յերկրի յուրաքանչյուր ազնիվ քաղաքացու պատվի գործն և։ Մարդահամարի փայլուն արդյունքները ամբողջ աշխարհում կհնչեն վորպես հաղթանակած սոցիալիզմի հիմն։

# ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՄԱՐԴԱՀԱՄԱՐ

Այսօր մենք հրապարակում ենք ԽՍՀ Միության Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի վորոշումը «1939 թվի Համամիութենական մարդահամարի մասին»։

Մեր սոցիալիստական հայրենիքի մարդահամարը պետական վիթխարի նշանակություն ունի։ Ո՞վ չի հիշում լենինյան կարևորագույն ցուցումն այն մասին, թե սոցիալիզմը—դա հաշվառում է։ Ընկեր Ստալինն ընդգծում է, թե՝

«Վոչ մի շինարարական աշխատանք, վոչ մի պետական աշխատանք, վոչ մի պլանային աշխատանք անիմաստ է առանց ճիշտ ՀԱՇՎԱՌՄԱՆ։ Իսկ հաշվառումն անիմաստ է առանց վիճակագրության։ Հաշվառումն առանց վիճակագրության վոչ մի քայլ առաջ չի շարժվի»։

Մեր հայրենիքի բոլոր հաջողությունների հիմքն է հանդիսանում նրա ազգաբնակչության լիակատար և մանրամասն հաշվառումը։ Վորովհետև մեր յերկիրը միակն է աշխարհում, ուր «մարդ» բառն իրոք հպարտ է հնչել, ուր մարդիկ հանդիսանում են աշխարհի բոլոր կապիտալներից ամենաարժեքավորը։ Սոցիալիզմը վերջ է տվել շահագործող կարգերի նզովքին, վորը ճնշում և ստրկացնում է միլիոնավոր աշխատավորների, նրանց դարձնելով մի բուռը հարուստ դասակարգերի վաստակի պարզ միջոց։ Խորհրդային ժողովուրդը միակ տերն է իր բախտի,



գիտակից ստեղծողը իր կյանքի նոր, բանական և յերջանիկ հիմունքների վրա։

Մեծ և հզոր է Խորհրդային ժողովուրդը։ Չըտեսնված արագ տեմպերով է աճում նրա թիվը։ Չ՞է վոր ԽՍՀՄ-ում ազգաբնակչության տարեկան աճը հավասար է այնպիսի մի յերկրի բնակիչների ամբողջ թվին, ինչպիսին է Ֆինլանդիան։ Անշեղորեն տարեց-տարի աճում է ծննդաբերությունը. 1937 թվին այն 18%-ով ավելի բարձր եր, քան 1936 թվին։ Անշեղորեն ընկնում է մահացությունը—1937 թվին այն 40%-ով ավելի ցածր եր, քան 1913 թվին։ Ապշեցուցիչ կոնտրաստ կապիտալիզմի յերկրների հետ համեմատած։ Մահվան վոսկրոտ ձեռքը տարեց-տարի տանում է ավելի ու ավելի մեծ քանակությամբ մանկական կյանքեր, ավելի ու ավելի կարճանում է աշխատավոր և շահագործվող մասսաների կյանքի միջին ուղին։ Մահը հարուստ բերք է հավաքում քաղցի, գործազրկության, կարիքի հերկած դաշտերում։

Մեր յերկրում, ուր միայն անհատական աշխատանքն ու ընդունակություններն են վորոշում մարդու դիրքը հասարակության մեջ, տեղի յե ունենում մարդկանց զարմանալիորեն արագ, վոչ մի տեղ և յերբեք չտեսնված աճում ամեն տեսակետից։ Տասնյակ և հարյուրավոր նոր պրոֆեսիաներ են կյանքի կոչվել ստալինյան հնգամյակներով, նրանց ծնունդ տված ինդուստրիալ գիգանտներով, կոլտնտեսական անծայրածիր արտերով։ Սակավ արտադրողական, ծանր մկանային աշխատանքը փոխարինվել է հզոր տեխնիկա-

յալ հագեցված շատ ավելի բարձր արտադրողականության աշխատանքով։ Աշխատանքի բարձրագույն, սոցիալիստական արտադրողականության նախամարտիկները, արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի պանծալի ստախանովականները, այդ տեխնիկայից վերցնում են այն ամենը, ինչ նա կարող է տալ։ Մարդահամարը պետք է ցույց տա ազգաբնակչության զբաղմունքների բնույթի այդ տեղի ունեցած վիթխարի փոփոխությունները, մասսաների կուլտուրական մակարդակի աճումը, վորակավորման բարձրացումը և այլն։

Մարդահամարը չափազանց պատասխանատու գործ է։ Այդ հաշվի յեն առնում նաև սոցիալիզմի թշնամիները։ Հայտնի յե, վոր նախորդ մարդահամարը մեզնում անցկացվեց 1937 թ. հունվարին։ Բայց ժողովրդական տնտեսության հաշվառման կենտրոնական վարչությունը, վորի ղեկավարության մեջ եյին խծկվել այն ժամանակ ժողովրդի թշնամիները, մարդահամարն անցկացվեց վիճակագրական գիտության տարրական հիմունքների ամենակոպիտ խախտումով կառավարության կողմից հաստատված հրահանգների խախտումով։ Ժողովրդի թշնամիներն ամեն ինչ արեցին, վորպեսզի խեղաթյուրեն ազգաբնակչության իսկական թիվը։ Նրանք հաշվարարներին տվել եյին վնասարարական ցուցումներ, վորոնց հետևանքով քաղաքացիների բազմամարդ խմբեր չմտցվեցին մարդահամարի թերթերի մեջ։ ԽՍՀ Միության ժողովրդական կոմիսարների Խորհուրդը 1937 թվի սեպտեմբերին այդ մարդահա-



մարի կազմակերպումը ճանաչեց անբավարար և նրա նյութերը՝ դեֆեկտավոր։ Հենց այն ժամանակ ել կառավարությունը պարտավորեցրեց ժողովրդական տնտեսության հաշվառման կենտրոնական վարչությանը նորից մարդահամար անցկացնել 1939 թվի հունվարին։

Առաջիկա մարդահամարը պետք է ճշգրիտ տվյալներ տա ԽՍՀՄ ազգաբնակչության թվի, նրա սոցիալական, պրոֆեսիոնալ, ազգային, տարիքային կազմի, նրա կուլտուրական մակարդակի մասին։ Այդ բոլորն այնպիսի տվյալներ են, վորոնք կենսականորեն անհրաժեշտ են պետական կառավարման և ժողովրդատնտեսական պլանավորման համար։ Մարդահամարը պետք է արտացոլի մեր յերկրում սոցիալիզմի տարած համաշխարհային պատմական հաղթանակների մեծապանծ արդյունքները։ Մարդահամարի արդյունքները ամենաարժեքավոր նյութ կծառայեն ստալինյան յերրորդ հնգամյակի տնտեսական և կուլտուրական շինարարության համար։ Այդ արդյունքների բարձրագույն, լիովին անբասիր վորակն ապահովելը վոչ միայն խորհրդային վիճակագրության վողջ ապարատի, այլև բոլոր կուսակցական և խորհրդային կազմակերպությունների պատվի գործն է։

Կուսակցական կազմակերպությունների, կուսակցական և վոչ կուսակցական բոլշևիկների ուղղակի պարտականությունն է անդուլ կերպով աշխատավորական ամենալայն մասսաներին բացատրել մարդահամարի նշանակությունն ու բնույթը։ Ընդ սմին հարկավոր է ոգտագործել ԽՍՀՄ

Գերագույն Խորհրդի և Միութենական ու ինքնավար հանրապետությունների Գերագույն Խորհուրդների ընտրությունների վերաբերյալ ընտրական կամպանիաների ընթացքում կուտակված մասսայական-քաղաքական աշխատանքի հարստագույն փորձը: Կառավարության վորոշումը սահմանում է, վոր մարդահամարի այն աշխատողները, վորոնք մեղավոր կլինեն մարդահամարի անցկացման սահմանված կարգը խախտելու մեջ, ինչպես նաև կհրապարակեն մարդահամարի ժամանակ հավաքած տեղեկություններն առանձին անձանց մասին, կկանչվեն դատական պատասխանատվության: Այս կետն անհրաժեշտ է ամեն կերպ բացատրել, վորպեսզի ջլատվեն թաքնված թշնամիների փորձերը՝ անվստահություն սերմանելու մարդահամարի և նրա աշխատողների հանդեպ: ԽՍՀ Միության Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի վորոշման մեջ մատնանշված է, վոր այն քաղաքացիները, վորոնք խուսափում են տեղեկություններ տալուց կամ գիտավորյալ կերպով վոչ ճիշտ տեղեկություններ են տալիս, կանչվում են դատական պատասխանատվության: Այս միջոցը միանգամայն անհրաժեշտ է, վորովհետև յուրաքանչյուր մեկը, ով թշնամու դրդումով կամ սեփական անգիտակցությունից ելած խանգարում է մարդահամարի անցկացմանը, դրանով իսկ վնաս է հասցնում մեր հայրենիքի շահերին:

Ինչպես ամեն մի այլ գործի, այնպես էլ մարդահամարի հաջողությունը ՎՃՌՈՒՄ ԵՆ ՄԱՐԴԻԿ, նրանց ճիշտ ընտրությունն ու դաստիա-



րումը, նրանց աշխատանքի ամենորյա ղեկավարությունը, մշտական վերահսկողությունը նրանց նկատմամբ: Կառավարության վորոշումը ճիշտ ու հստակ սահմանում է, թե վոր կատեգորիաների աշխատողները պետք է ներգրավվեն, ինչ սկզբունքների վրա պետք է կառուցվի նրանց աշխատանքը: Հաշվային անձնակազմը հարյուր հազարներով է հաշվվելու: Հաջողության բանալին կադրերի ընտրության բոլշևիկյան սկզբունքի մեջ է—«առաջին՝ ըստ քաղաքական հատկանիշի, այսինքն արդյո՞ք նրանք արժանի յեն քաղաքական վստահության, և յերկրորդ՝ ըստ գործարար հատկանիշի, այսինքն՝ արդյո՞ք նրանք պիտանի յեն այսինչ կոնկրետ աշխատանքի համար» (ՍՏԱԼԻՆ):

Անհեթեթություն և հանցագործություն կլիներ շաղակրատել այս մասին, թե աշխատողները չեն բավականացնում մարդահամարի անցկացման համար. անցկացած յերկու ընտրական կամպանիաները բավական ակնառու կերպով ցույց տվին, թե կոմունիզմի գործին մինչև վերջը նվիրված մարդկանց ինչպիսի հզոր ռեզերվներով է շրջապատված Լենինի-Ստալինի կուսակցությունը: Կուսակցական և վոչ կուսակցական բոլշևիկների թվից, ուսուցչության, ուսանողության անհրաժեշտ ունակությունների տեր հաշվային և գրասենյակային աշխատողների միջից կարելի յե վըրադրով ծածկել մարդահամարի համար անհրաժեշտ հաշվարարների և այլ կատեգորիաների աշխատողների պահանջը:

Կառավարության վորոշման մեջ ճշգրիտ ցույց

են տրված նախապատրաստական աշխատանքի ժամկետներն ու բնույթը։ Անհապաղ ծավալել այդ աշխատանքը, այն կատարել սահմանված ժամկետներին, ամբողջապես ապահովել մարդահամարի հաջող անցկացումը — այդպիսին ե բոլոր կուսակցական և խորհրդային կազմակերպությունների առջև ծառացած կարևորագույն քաղաքական խնդիրներից մեկը։

(«Պրավդա»-ի 1938 թ. հուլիսի 27-ի առաջնորդող)։



ՀԱՎԵԼՎԱԾ 2

## 1939 ԹՎԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՄԱՐԴԱՀԱՄԱՐԻ ՄԱՍԻՆ ԽՍՀՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻ ՎՈՐՈՇՈՒՄԸ

ԽՍՀ Միության Ժողովրդական Կոմիսարների Խորհուրդը ՎՈՐՈՇՈՒՄ Ե՝

1. Կատարել համամիութենական մարդահամար առ 17-ն հունվարի 1939 թվի դրությամբ։

2. Մարդահամարը կատարել միաժամանակ ԽՍՀ Միության ամբողջ տերիտորիայում, ընդգրկելով այդ տերիտորիայում գտնվող ինչպես խորհրդային քաղաքացիներին, այնպես էլ օտարահպատակներին։

3. Սահմանել, վոր մարդահամարի յենթակա յե առկա բնակչությունը, ներառյալ ժամանակավորապես բնակվողները։

Բացի դրանից, գրի յեն առնվում ժամանակավորապես բացակայողները Հրահանգով սահմանված կարգով։

Այն բնակչությունը, վորը մարդահամարի օրը՝ 1939 թ հունվարի 17-ին գտնվում ե ճանապարհորդության մեջ—հեռու տեղեր մեկնող գնացքներում, ծովային և գետային շոգենավերում, վագզալներում և կայարաններում ցուցակագրվում են հատուկ կարգով։

4. Հաստատել մարդահամարի թերթի բլանկը և նրա լրացման վերաբերյալ Հրահանգը։

5. Սահմանել, վոր մարդահամարը կատարվում

է հատկապես պատրաստված հաշվարարների կողմից 1939 թվի հունվարի 17-ից մինչև 23-ը քաղաքային բնակավայրերում և 1939 թվի հունվարի 17-ից մինչև 26-ը՝ գյուղական վայրերում։

6. Հաշվարարների աշխատանքի ղեկավարման համար առանձնացնել հատկապես պատրաստված հրահանգիչ-հսկիչներ։ Նրանց վրա դնել մարդահամարի ճշտության ստուգումը, հաշվարկի հետ միասին նրան հանձնված տեղամասում շրջագայելու ճանապարհով։ Գյուղական վայրերում հաշվառման ճշտությունը ստուգելու գործին մասնակից դարձնել, բացի այդ, գյուղական խորհուրդների լիազորներին։

Մարդահամարի ճշտության ստուգումը կատարել 1939 թվի հունվարի 24-ից մինչև փետրվարի 2-ը քաղաքային բնակավայրերում և 1939 թվի հունվարի 27-ից մինչև փետրվարի 5-ը՝ գյուղական վայրերում։

7. Քաղաքներում և շրջաններում մարդահամարի կազմակերպման և անցկացման անմիջական ղեկավարությունը դնել Ժողովրդական տնտեսության հաշվառման քաղաքային և շրջանային տեսուչների վրա։

Նախապատրաստական աշխատանքների և մարդահամարի կատարման ժամանակամիջոցում տեսուչին օգնելու համար առանձնացնել հատուկ օգնական՝ մարդահամարի գծով։

8. Ժողովրդական տնտեսության հաշվառման քաղաքային ու շրջանային տեսուչներին կից կազմակերպել մարդահամարային բաժիններ (շրջանին 3-ից մինչև 5)։



9. Հաշվարարների և հրահանգիչ-հսկիչների մարդահամարի բաժինների վարիչների, նրանց օգնականների և ժողովրդական տնտեսության հաշվառման քաղաքային ու շրջանային տեսուչների օգնականների կադրերի կոմպլեկտավորման համար առաջարկել Միութենական և Ինքնավար հանրապետությունների Ժողովրդական Կոմիսարների Խորհուրդներին, երկրային և մարզային գործադիր կոմիտեներին, Ժողովրդական Տնտեսության Հաշվառման Կենտրոնական Վարչության օրգանների հետ միասին, լրացուցիչ վարձատրության պայմաններով (բացի աշխատավայրում պահպանվող աշխատավարձից) մասնակից դարձնել դպրոցների, խորհրդային հիմնարկությունների և առևտրական կազմակերպությունների աշխատողների, բարձրագույն ուսումնական հիմնարկների և միջնակարգ դպրոցների բարձր դասարանների սովորողներին, ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, խորհտնտեսությունների հաշվետու-հաշվային և գրասենյակային անձնակազմին և այլն։

10. Սահմանել, որ յուրաքանչյուր հաշվարար և հրահանգիչ-հսկիչ ներկայացվելով Ժողովրդական Տնտեսության Հաշվառման Կենտրոնական Վարչության տեղական օրգանների կողմից, անհատապես հաստատվում է շրջանային գործադիր կոմիտեյի կամ քաղաքային խորհրդի կողմից ըստ պատկանելության։

Հաշվարարների ու հրահանգիչ-հսկիչների ընտրությունը և նրանց անհատական հաստատումը շրջանային գործադիր կոմիտեների և քաղա-

քային խորհրդի կողմից սկսել 1938 թվի օգոստոսի 1-ից և վերջացնել 1938 թվի նոյեմբերի 1-ին։

11. Սահմանել, որ Համամիութենական մարդահամարի բոլոր հաշվարարներին ու հրահանգիչ-հսկիչներին տրվում են հատուկ վկայականներ շրջանային գործադիր կոմիտեի կամ քաղաքային խորհրդի նախագահի և ժողովրդական տնտեսության հաշվառման շրջանային (քաղաքային) տեսուչի ստորագրությամբ։

Ազգաբնակչության պահանջով մարդահամարի աշխատողները պարտավոր են ներկայացնել իրենց վկայականները։

12. Սահմանել, որ ժողովրդական տնտեսության հաշվառման քաղաքային ու շրջանային տեսուչների օգնականները և մարդահամարի բաժինների վարիչները անհատապես հաստատվում են մարզային բաժանում չունեցող Միութենական Հանրապետությունների և Ինքնավար Հանրապետությունների Ժողովրդական Կոմիսարների Խորհուրդների, երկրային և մարզային գործադիր կոմիտեների կողմից, ժողովրդական տնտեսության հաշվառման հանրապետական, երկրային և մարզային վարչությունների առաջադրությամբ։

Ժողովրդական տնտեսության հաշվառման քաղաքային ու շրջանային տեսուչների օգնականների և մարդահամարի բաժինների վարիչների ընտրությունն ու հաստատումն սկսել 1938 թվի օգոստոսի 1-ից և վերջացնել սեպտեմբերի 15-ին։



Սահմանել, որ մարդահամարի բաժինների վարիչների օգնականները հաստատվում են շրջանային գործադիր կոմիտեների և քաղաքային խորհուրդների կողմից։ Նրանց ընտրությունն ու հաստատումն սկսել 1938 թ. օգոստոսի 1-ից և վերջացնել նոյեմբերի 1-ին։

13. ԽՍՀ Միության մեջ մարդահամարի կատարման պատասխանատվությունը դնել ԽՍՀՄ Պետպլանին կից Ժողովրդական Տնտեսության Հաշվառման Կենտրոնական Վարչության պետի վրա, որն անմիջապես իրականացնում է մարդահամարի ղեկավարությունը։

Մարդահամարի նախապատրաստման ու կատարման և նրա նյութերի մշակման համար նրան կից կազմակերպել 1939 թ. Համամիութենական մարդահամարի Բյուրո։

Մարդահամարի կատարման պատասխանատվությունը Միութենական և Ինքնավար Հանրապետությունների, երկրների և մարզերի սահմաններում դնել Հանրապետությունների, երկրների և մարզերի ժողովրդական տնտեսության հաշվառման վարչությունների պետերի վրա։ Նրան կից, ինչպես և խոշոր քաղաքներում, մարդահամարի նախապատրաստման և կատարման համար կազմակերպել մարդահամարի Բյուրոններ։

14. Սահմանել, որ մարդահամարի այն աշխատողները, որոնք մեղավոր կլինեն մարդահամարի անցկացման սահմանված կարգը խախտելու մեջ, ինչպես նաև կհրապարակեն մարդահամարի ժամանակ հավաքված տեղեկությունները առանձին

անձանց մասին, կկանչվեն դատական պատասխանատվության։

15. Այն քաղաքացիներին, որոնք կխուսափեն տեղեկություններ տալուց կամ թե կտան դիտավորյալ կերպով ոչ-ճիշտ տեղեկություններ, կենթարկվեն դատական պատասխանատվության։

ԽՍՀ Միության Ժողովրդական
Կոմիսարների Խորհրդի Նախագահ՝
Վ. ՄՈԼՈՏՈՎ

ԽՍՀ Միության ԺԿԽ-ի Գործերի
Կառավարիչ՝ Ն. ՊԵՏՐՈՒՆԻՉԵՎ

Մոսկվա, Կրեմլ, 26 հուլիսի 1938թ.





ԽՍՀՄ
ՊԵՏՊԼԱՆԻՆ ԿԻՑ ԺՈՂՈՎՐ-
ԴԱԿԱՆ-ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ
ՀԱՇՎԱՌՄԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ
ՎԱՐՉՈՒԹՅՈՒՆ

Հաստատված է ԽՍՀՄ Ժողովրդական
Կոմիսարների խորհրդի կողմից
1938 թ. հուլիսի 26-ին

# ՄԱՐԴԱՀԱՄԱՐԻ ԹԵՐԹ №______

1939 Թ. ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՄԱՐԴԱՀԱՄԱՐ

Հանրապետություն, յերկրամաս, մարզ .
Օկրուգ . . . . . . .
Շրջան . . . . . . .

| Մարդահամարի բաժնի №-ը | Հրահանգչական տեղամասի №-ը | Հաշվային տեղամասի №-ը | Թաղամասի №-ը | Տնտեսության ամփոփման տեղեկագրի կամ տնացուցակի №-ը |
|---|---|---|---|---|
| | | | | |

**Հանցեն քաղաքային բնակավայրերում**

Քաղաքային բնակավայրի անունը ______
Քաղաքային շրջան ______
Փողոց, նրբանցք, հրապարակ ______
Տան №-ը ______ բնակարանի №-ը ______

**Հանցեն գյուղական վայրերում**

Գյուղխորհուրդ ______
Բնակավայրի (գյուղակի, ավանի, ղշլաղի, գյուղի, խուտորի և այլն) անունը ______
Փողոց, նրբանցք ______
տանը № ______

| №№ | Ազգանուն, անուն, հայրանուն | №______ |
|---|---|---|
| 1 | Առնչությունն բնտանիքի գլխավորի հետ (կինը, տղան, մայրը, քույրը, յեղբոր կամ քրոջ վորդին և այլն) | |
| 2 | Մշտական, թե՞ ժամանակավոր է բնակվում այստեղ | |
| 3 | Ժամանակավոր բնակվողի համար ցույց տալ՝<br>ա) մշտական բնակավայրը<br>բ) վորքան ժամանակ է բացակայում մշտական բնակավայրից | |

| | | |
|---|---|---|
| 4 | Այստեղ մշտական բնակվողի, բայց ժամանակավոր բացակայողի նկատմամբ նշել «ժամանակավոր բացակայում է», և ցույց տալ վորքան ժամանակ է բացակայում | |
| 5 | Սեռը (արական, իգական) | |
| 6 | Քանի տարին է լրացել ծննդյան որից, իսկ մեկ տարեկանից փոքր յերեխաների համար՝ ամիսը | տարի ——<br>ամիս —— |
| 7 | Ազգությունը | |
| 8 | Մայրենի լեզուն | |
| 9 | Ամուսնացած է, թե վոչ | |
| 10 | Վո՞ր պետության քաղաքացի յե | |
| 11 | Գրագիտությունը՝<br>ա) վորևե լեզվով կարդում և գրում է, թե միայն կարդում<br>բ) թե բոլորովին անգրագետ է | |
| 12 | Սովորողի նկատմամբ ցույց տալ՝<br>ա) ուսումնական հաստատության, դպրոցի կամ դասընթացների լրիվ անունը<br>բ) վոր դասարանում կամ վոր կուրսում է սովորում (մեկ տարուց պակաս ուսման տևողություն ունեցող դասընթացների նկատմամբ նշել «կարճատև») | |
| 13 | Ավարտե՞լ է արդյոք միջնակարգ կամ բարձրագույն դպրոց (նշել «միջն.», «բարձրագ.») | |
| 14 | Զբաղմունքների (ծառայության) տեսակը կամ ապրուստի միջոցների այլ աղբյուրը ներկայումս | |



| | | |
|---|---|---|
| 15 | Աշխատանքի վայրը (ձեռնարկության, կոլտնտեսության, հիմնարկության անունը) | |
| 16 | Հասարակական վո՞ր խմբին է պատկանում—բանվորների, ծառայողների, կոլտնտեսականների, կոոպերացված տնայնագործների, մենատնտես-գյուղացիների, չկոոպերացված տնայնագործների, ազատ պրոֆեսիաների տեր մարդկանց, թե կրոնական պաշտամունքի սպասավորների և վոչ-աշխատավորական տարրերի խմբին | |



